# Ապրիլի 22-ին լրացավ Վ. Ի. Լենինի ծննդյան 118-րդ տարեդարձը



Ոչ ոք չի տա մեր փրկությունը,
Ոչ խենթ հերոսը, ոչ արքան.
Մենք պետք է մեր ազատությունը
Կռենք ձեռքով մեր սեփական:
Որպեսզի շուտ փշրենք մեր լուծը
Եվ ետ խլենք ողջ հողը մեր,
Խփե՛նք մուրճերը, տանք մեր ուժը,
Քանի երկաթը տաք է դեռ:

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵ-
ՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐ-
ՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 4 • 88




*Հանձնված է արտադրության 27.01.88 թ.: Ստորագրված է տպագրության 06.04.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 65432: Պատվեր՝ 180: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 27.01.88 г. Подписано к печати 06.04.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 65432. Заказ 180. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.


Շապիկի 1-ին էջին՝
ՎԱՐԴԳԵՍ ՍՈՒՐԵՆՅԱՆՑ, «ԱՍՊԵՏ ԿԻՆԸ»,

ՎՐԵԺ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ




(պատմվածք)

Նկարը՝ ԲՈՐԻՍ ՀԱԿՈԲՅԱՆԻ

«Այս ժողովուրդին հոգեվարքին և ահիության ավելի հուզիչ խորհրդանշանը կա՞ միթե, քան այն տասը տարեկան տըղեկը, որ Տեր Զորի ավազներուն մեջ թաղած էր ինքզինք: Համր էր ան: Լեզուն կտրած էին: Երբ քարավան մը կանցներ, ան դուրս կուգար ավազեն և շարժումներով կհասկացներ, թե անդին կկոտորեն, մինչև որ քարավանը ետ կդառնար, և տղեկը կրկին կթաղվեր ավազներուն մեջ՝ սպասելով հաջորդ քարավանին: Այս տղեկը նույն ինքը Հայաստանն է: Վաթսուն տարիե ի վեր ան կոչ կընե աշխարհին, և վաթսուն տարիե ի վեր աշխարհ կմերժե լսել զայն»:

Իվ Թերնոն, ֆրանսիացի վիրաբույժ.
«Հայերը, ցեղասպանության մը պատմությունը» գրքից:

**Երջանկությունը ձեռք ենք բերում ողջ կյանքի ընթացքում, կորցնում ենք մի ակնթարթում:**

**Այդ օրը մեր բախտի տնօրենը աշխարհի ձլումուտերը փակեց, իր արդար տեսադաշտում ծանրութեթև արեց մեր վարքն ու բարքը, աչքերը մլմլացրեց ու եզրահանգեց. «Այս ընտանիքը անհոգ է ապրում, անբնական չէ՞ հայերի համար»: Եվ վճռեց. «Փորձությունը նրա համար է, ով դիմանում է»: Այդ օրը մեր տասնամյա որդին հեծանիվով բախվեց բեռնատարին:**

**Հայոց լեզուն արցունքոտ բառապաշար ունի: Ընտրեք այդ բառերից ամենամորմոքունները և ինքներդ նկարագրեք երեխայի մոր վիճակը: Իսկ ես, հիվանդանոցի սառը աստիճաններին նստած, կմըտածեմ կյանքում իմ գործած սխալների**

և այն մասին, որ իմ որդուն հարվածող բեռնատարը ինձ համար էր նախատեսված:

Ավելի անհեթեթ բան, քան վշտածեծ տղամարդը, դժվար է պատկերացնել: Արցունքները լցվում են կոկորդս, բայց ես շուրթերս եմ կծոտում: Հանկարծ մեկը չտեսնի: Ամաչում եմ վշտից, անօգնականությունից, անորոշությունից: Տաբատս եմ թափ տալիս, փողկապս ուղղում, իբր համոզում եմ, իբր սրանց սիրտ տալիս, իբր տղամարդ եմ: Այնինչ ներսումս օճառի պղպջակի պես ինչ-որ բան է ուռչում, թրթռում է, ուզում է պայթել: Իսկ ես առաջին պատահած մարդուն՝

— Ներեցեք, ժամը քանի՞սն է:

Հետո իբր ժամացույցս եմ ուղղում: Իսկ օճառի պղպջակի պես բանը ներսումս ուռչում է ու բարակում:

«Ո՞ր մեղքիս համար... ո՞ր մեղքիս համար...»:

Մեկ ամիս առաջ ծեծկռտուքի մեջ ընկա, կողերս լավ տրորեցին, բայց մի քանի հարված էլ ինքս հասցրեցի՝ մեղավոր եմ: Գաղտնի քվեարկության ժամանակ ջնջեցի մի ապաշնորհ բանաստեղծի թեկնածությունը, որը գրողների միություն էր ուզում սողոսկել, որպեսզի մի քանի տարի անց մեր գլխին նստի՝ մեղավոր եմ: Խանութում մսի վերջին կըտորը գնեցի, իսկ հերթում պառավներ կային, երեխամայրեր՝ մեղավոր եմ: Հենց այն պահին, երբ որդիս հեծանիվով բախվեց բեռնատարին, գրպանումս 25 ռուբլի դրամ կար, իսկ որքան մարդիկ կան այս երկրագնդի վրա, որ քաղցած են՝ մեղավոր եմ:

Ականջիս է հասնում երեխայիս ճիչը: Նա ցավ է զգում՝ ուրեմն կապրի: Նա կապրի, բայց այլևս բակում ֆուտբոլ չի խաղա: Ողջ կյանքում հետևից քարշ կտա փայտե ոտքը: Իսկ իմ ոտքերը պինդ են, շարժուն: Իմ երեխան ողջ կյանքում քարշ կտա ինձ համար նախատեսված փայտը: Նա ճչում է, իսկ ես անկարող եմ օգնել: Փողկապս եմ ուղղում, հազում եմ, շուրթերս կծոտում: Ամաչում եմ լաց լինել, ամաչում եմ օգնել որդուս: Բայց ահա միտքս սկսում է թպրտալ: Աջ ոտքս ընդվում է: Տաբատի վրայից շոշափում եմ ոտքս: Ցավ եմ զգում: Անտանելի ցավ...

Ե՞ս եմ, թե՞... ճչում եմ: Անկողնում շուռումուռ եմ գալիս: Մայրս, մորաքույրս, հարևան կանայք խմբվել են մահ-





ճակալիս շուրջ: Հայրս ներսուդուրս է անում՝ շուրթերը կծոտելով: Մորաքույրս ինչ-որ հեղուկ է քսում ոտքիս: Հեծեծանքները ինձ խեղդում են, կլանչում եմ վիրավոր շան նման: Մտնում է տատս: Նայում է աչքերիս մեջ:

— Ինչ եք վայնասուններդ գցել,— գոռում է նա,— դե շուտ բոլորդ դուրս եկեք:

Մորաքրոջս ձեռքից խլում է հեղուկով շիշը և մի կողմ շպրտում: Բոլորը շվարած են, բայց ենթարկվում են: Մենյակում երկուսով ենք: Տատս գլխաշորը ետ է տանում, քանդում է ծաղկավոր լաչակը, գոգնոցի գրպանից հանում է քթախոտը: Մի պահ լռում է, հետո սկսում է ժպտալ:

Ես մղկտում եմ: Տատիս դանդաղ շարժումներն ու ժպիտը ինձ զայրացնում են:

— Տատը քեզ մատաղ,— ասում է,— ցավում է, չէ՞:

Չեմ պատասխանում, բայց այդ պահին ասես ոտքս նորից են մտցնում թոնիրին կախված կաթսայի քլթքլթացող ջրի մեջ: Ճչում եմ: Մայրս դուռը կիսաբաց է անում: Տատս բարկացած գնում է այդ կողմը, դուռը շրխկացնում և բանալիով կողպում: Գալիս նստում է մահճակալիս: Ժպտում է: Գոռում եմ.

— Ցավում է... իսկ դու...

— Մոծակը կծել է, Հակոբիկը ննվում է,—ծիծաղում է տատս,— իսկ անապատի տղան քո տարիքին էր:

— Ի՞նչ անապատ,— գոռում եմ,—ցավում է:

— Էս պատմությունը պահել էի նեղ օրվա համար,— ասաց տատս, աչքերը կկոցեց ու սկսեց.

«Աշխարհում դեռ մարդիկ կգտնվեն, որ, իբր, քեզ ցավից հեռու պահելու համար կասեն՝ մոռանանք: Էդ տեսակ մարդիկ քամու բերած սերմ են, Հակոբիկ, էն անլեզու երեխի ձենը դրանց ականջին թող պայթի: Աշխարհում, ուրեմն, մի անապատ է եղել: Էս անապատի ամենաանվնաս շունչերը օձերն ու կարիճներն էին: Ծոգը՝ վերևից, ետևից՝ գուժկան քամին, սովը, սարսափն ու կսկիծն էլ՝ մեր ներսից: Երկու տարեկան հորդ մեջքիս կապած, իմ նման երկու տասնյակ ոչ էն է մեռած, ոչ էն է կենդանի մարդկանց հետ մոլորվել ենք էդ Տեր Զոր կոչված դժոխքում: Սպասում ենք, թե ուր որ է թուրքի ձեռքը կընկնենք նորից, ու էդ գազանները մեզ կհոշոտեն: Քո հերը իմ հինգերորդ զավակն էր: Հիմա կասես՝ բա էն մյուս չորսն ի՞նչ եղան: Էդ հարցը չտաս, Հակոբիկ, ավելի լավ է գլուխըս եռացրած ջրով կաթսայի մեջ մտցնես: Քամի, կամավոր հուղարկավոր ավազն էլ՝ ամենակուլ. թե ուժասպառ եղար, թուրքի ջանասիրությամբ քեզ իր խորքերը կքաշի: Քարշ ենք գալիս, մեկ էլ՝ ավազի միջից դուրս պրծած մի գլուխ տեսանք: Անապատի համար սովորական բան. դիակները եթե ծառեր դառնային՝ Տեր Զորը աշխարհի ամենաստվարախիտ անտառը կլիներ: Ով զարմանք... գլուխը շարժվում էր: Ավազի միջից դուրս է գալիս մի երեխա... Ավազը խճճվել է գանգուր մազերի մեջ, հայացքը հոգնած է, տանջահար, բայց աչքերը հուր են թափում: Մեր մեջ հազար անգամ մեռած խիղճը նորից է կենդանանում: «Խեղճ, որբացած երեխա է,— մտածում ենք,— երևի խնդրում է իրեն էլ մեզ հետ վերցնենք»: Երեխան ուզում է ճչալ, ուզում է ինչ-որ բան ասել, բայց ձայն չկա: Կանգնել է դեմուդեմ, ու ձեռքերով փակել մեր երթը: Բացում է բերանը ու ցույց տալիս: Մեկը հառաչում է. «Խեղճ երեխի լեզուն թուրքերը կտրել են, աստվա՜ծ»: Հետո նա ավազի վրա ինչ-որ բան է գրում. «Այնտեղ թուրքեր են»: Ծեղեցինք մեր ճամփան՝ չնայած անապատի բոլոր ճամփաները տանում էին դեպի նույն «օազիսը»՝ թուրքը: Ուզում ենք երեխին էլ մեզ հետ վերցնել, հրաժարվում է: Աղաչում ենք, ուզում ենք զոռով տանել՝ անդրդվելի է: Հասկացնում է, որ պետք է մնա, մյուս գաղթական խմբերին էլ զգուշացնի: Հետո նա թաղվեց ավազի մեջ: Նրա փոքրիկ գլուխը, աչքերի վճռական փայլը ասես մեզ հուսադրում էին: Մենք էլ հոգով ամայացած, խոցոտված՝ մտածում ենք. «Բռնությունը ոգու դեմ անզոր է: Քանի դեռ ոգին կա, անապատում լինի, թե փրփրաշատ գետերի մեջ՝ մի գանգրահեր տղա միշտ էլ ավազի կամ էլ ալիքների միջից կպարզի գլուխը ու մեզ ցույց կտա հուսո ճանապարհը»:

Հեռանում ենք՝ ստեպ-ստեպ ետ նայելով: Հետզհետե հրաշք մանուկի գլու-

խը կորավ մեր տեսադաշտից: Տաքը տարեկան էր: Մինչև էսօր էլ մտածում եմ էն, որ ես կամ, քո հերը կա, դու կաս նրա շնորհիվ է: Ի՞նչ եղավ... Քանի՛ մերպեսների փրկեց... անապա՛տը կուլ տվեց նրան, թե՛...

Էս պատմությունը պահել էի նեղ օրվա համար: Ցավը ցավով են մեղմում»: Ժպտալու ի՞նչ կար այս պատմության մեջ, բայց տատս ժպտում էր, եռացրած ջրի մեջ խաշված ոտքս ապաքինվե՞լ էր... ցավ չէի զգում: Ամաչում էի քիչ առաջվա իմ արցունքներից: Մահճակալից իջնելու շարժում արեցի: Տատս արգելեց: Դուռը բացեց: Մայրս, մորաքույրս, մյուսները ներս թափվեցին... Զարմացած ինձ էին դիտում՝ ես ժպտում էի:

— Հը՛, Հակոբիկ, ցավո՞ւմ է:

— Ի՞նչը:

— Ոտքդ:

— Չէ,— ասացի,— միայն աչքերս են կծկծում:

— Քոռանամ ես,— ասաց մայրս,— երևի եռացրած ջրի կաթիլներ են թռել:

— Չէ,— ասաց տատս,— ավազ լցըվեց աչքերի մեջ:

* * *

Հիվանդանոցի սառը աստիճանների վրա ականջիս է հասնում իմ որդու մըղկըտուքը: Բարձրանում եմ և ուղղվում դեպի հիվանդասենյակը: Ճերմակ խալաթավոր մի կին փորձում է ինձ արգելել: Կոպտորեն մի կողմ եմ հրում՝ մեղավոր եմ: Դռան առջև ճանապարհս է փակում բժիշկը: Խնդրում եմ, համոզում եմ՝ չի զիջում: Աղմկում եմ, լաց եմ լինում՝ չեմ ամաչում, ի վերջո, համոզվում է:

— Միայն հինգ րոպե,— ասում է բըժիշկը և բուժքրոջը դուրս կանչում: Հինգ րոպե: Որդիս մղկտում է: Ցավը անճանաչելի է դարձրել նրա դեմքը: Ինձ է նայում հուսահատ, օգնություն հայցող հայացքով: Ես ժպտում եմ:

— Էս պատմությունը պահել էի նեղ օրվա համար...

Որդուս դեմքը պարզվում է: Ձեռքը զգուշորեն տանում է մարմնի այն մասին, ուր դատարկ է...

...Ներս է մտնում բժիշկը: Մեկ ինձ է նայում, մեկ՝ որդուս:

— Ինչպե՞ս ես, հերոս,— հարցնում է:

Որդիս զվարթ պատասխանում է.

— Լավ եմ, միայն աչքերս են կծկծում, երևի ավազ է լցվել:



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



ԱՐԱՐԱՏ ՔԵՇԻՇՅԱՆ,
Լենինական



Դուք ինձ չեք լսում, մի լսեք, պետք չէ,
Ձայնս երևի բարձր չի հնչում,
Բարձր գոռալը հայտնության ելք չէ,
Բայց արձագանք կա իմ ծնվող կանչում:

Ոլորանների լաբիրինթոսում
Այսպես խճճված չեմ մնա հավետ,
Փնտրեմ-կգտնեմ կյանքի քաոսում
Դեպի կյանք տանող ինչ-որ արահետ:

●●●

Փոքրիկ մի ամպիկ
Եկավ ու կպավ ծնոտին լեռան,
Ու լեռը դարձավ
Ճերմակամորուս ծերունու նման,
Քամին ապտակեց,
Ամպիկը փախավ վախից դողալով,
Արևը ժպտաց,
Կարծես հիացած նրանց այս խաղով:

●●●

Արեգակը թշնամի է
Ամեն տեսակ ձմեռ-ձյունի,
Թե չէ՝ ինչո՞ւ ծիածանը
Գույների մեջ ճերմակ չունի:
Իր բազմերանգ շերտերի մեջ,
Չկա նաև հայտնի սևը,
Ծուխ ու մրի թշնամի է
Գույն արարող մեր արևը:

# Սիրելի Սևան

Ուզում ես հասնել
Կորած ափերիդ,
Ջեռք բերել նախկին
Տեսքդ աննման,
Դրա համա՞ր ես,
Հառաչում այդպես,
Մաշվում օրեցօր,
Սիրելի Սևան:
Թող քո մեջ երբեք
Չծլարձակի
Թունավոր սերմը
Հուսահատության,
Եվ հասնես մի օր
Նախկին ափերիդ,
Դու կապույտ արցունք,
Հույսի ավազան...

# «Կոռյի» ամառ

Խելահեղության
Հասնող քո ուժով,
Ջյունաբեր ամպեր
Բերեցիր, քամի,
Դու, որ մե՜ր ամռան
Բարեկամն էիր,
Այդ ինչո՞ւ հանկարծ
Դարձար թշնամի:
Արի հաշտվենք,
Սառն ամպերը տար
Եվ թող հավաքենք
Բերքը դաշտերից,
Տուր մեզ մի փոքրիկ
«Կոռյի» ամառ,
Եվ գոհ կլինենք
Արդեն քեզանից:

# Սևան

Քո կոհակները
Հանգիստ շարժվում են
Որպե՜ս վզնոցներ
Ադամանդաշար,
Անհետանում են
Դեռ ափ չհասած,
Խորքիցդ նորից
Ծնվելու համար:
Ամպերը կարծես
Երկնքից իջել,
Ջինջ հայելուդ մեջ
Պատսպարվել են...
Ճայերը նստել
Ամպերի վրա,
Կտուցները կախ
Օրորվում են մեղմ:

●●●

Կյանքը ինձ համար՝
Գաղտնիքների ծով,
Ես՝ անվարժ լողորդ
Այդ անափ ծովում,
Իմ անզոր խելքի
Թևերին հենված՝
Չգիտեմ՝ դեպի
Որ կողմն եմ լողում:

●●●

Թե լուսնի վրա
Նստած մի վիշապ,
Իր կարթը նետի
Օդի օվկիանոս
Ու մի մարդ բռնի
Ձկնորսի նման.—
Ինչպես մեռնում է
Ձուկը շնչահեղձ՝
Մարդն էլ կմեռնի
Ճիշտ ձկան նման:
Եվ դու, բնապահպան,
Այդ պահին է պետք՝
Խոսք ուղղես նրան,
Ու փրկես նրան...

# Կավիճ

Ճերմակ, վարդագույն,
Քո ձևով ուրույն,
Միշտ առանց սրիչ
Գրում ես, կավիճ:
Գրում ես, հաշվում,
«Լուծում ես», մաշվում,
Կամ էլ նկարում՝
Մինչև սպառվում,
Փոշի ես դառնում:

# Հովեկներին

Սա ձեր անտառն էր,
Եկել-նստե՜լ եք,
Ընտանիքներով
Կերել-խմել եք,
Կրակ եք վառել,
Խորոված արել,
Լճում լողացել,
Լավ հանգստացել:
Երբ որ հեռանաք,
Կրակը մարեք,
Ձեր թափած աղբն էլ
Հետներդ տարե՜ք:

ՂՈՒԼՅԱՆ ԱՐՏԱԿ
Սևան, № 2 միջնակարգ
դպրոց, 7-րդ դասարան




(հատվածներ մեկ գործողությամբ պիեսից)

**ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ**

ԱՐԱ— հայ ուղեկից, ապրում է Ստամբուլում
ԲԻԼ ՍԱՐՈՅԱՆ— ամերիկահայ գրող
ՊԵՏՐՈՍ— Ստամբուլում հայերեն լեզվով լույս տեսնող «ՄԱՐՄԱՐԱ» թերթի խմբագիր

Գործողության վայրը՝ Բիթլիս
Գործողության ժամանակը՝ 1964 թ. մայիսի 19, կիրակի

ԲԻԼ—Էհ, վերջապես ես Բիթլիսում եմ, հորս՝ Արմենակի, և մորս՝ Թագուհու ծըննդավայրում, և հորս հոր՝ Պետրոսի, և նրա մոր՝ Հռիփսիմեի ծննդավայրում, և մորս հոր՝ Մինասի, և մորս մոր՝ Լուսինթագի ծննդավայրում: Եվ ահա, այստեղ նստած, խմում եմ այս հոյակապ թեյը, որ ինձ համար պատրաստել է մի թուրք և ուտում եմ նույն այն լավաշից, որ միշտ թխում էին մայրս և տատս, և նույն այն սպիտակ պանրից, որ միշտ սիրել եմ ու կերել Բիթլիսի դաշտերից հավաքված թարմ կանաչիով, ու չգիտեմ, չգիտեմ, ինչ անեմ: Չգիտեմ, թե ինչպես ընդունեմ այս ամենը: Ուզում եմ ասել, ում տեսնում եմ այստեղ, սիրտս ուրախությամբ է լցվում, ինձ թվում է՝ նրանք տարիներ առաջ ապրող իմ հայրենակիցներըն են ու չեն ուզում հավատալ, որ հենց իրենց պապերն են ապրելու հույսից զըրկել հարազատներիս, ստիպել են Մինասին, որ նա ասի Լուսինթագին. «Փախիր այստեղից, ընտանիքդ հավաքիր ու գնա Ամերիկա, այստեղ էլ չենք կարող ապրել, ինչքան ապրեցինք՝ բավական է»: Նա մահացավ, իսկ տատս ժողովեց իր ընտանիքը ու գնաց, ահա թե ինչու ես ծնվեցի Ֆրեզնոյում, ոչ այստեղ:

Ինչո՞ւ մենք հեռացանք այստեղից: Ի՞նչ է, Բիթլիսում էլ ուրիշ հայեր չկայի՞ն: Ինչո՞ւ, ուրեմն, մենք հեռացանք: Ինչո՞ւ, մահամերձ Մինաս պապս պատվիրեց ավելի երիտասարդ իր կնոջը, որ վերցնի ընտանիքն Ամերիկա, Կալիֆորնիա տեղափոխելու ծանր հոգսը, ես այդ կուզեմ հասկանալ: 1944 թ. Լոնդոնում ծանոթացա ոմն Արշակ Սաֆրաստյանի հետ, որը Բիթլիսում աշխատել է անգլիական հյուպատոսի մոտ, հենց այն շրջանում, երբ Լուսինթագն արդեն զբաղված էր իր ընտանիքի մեկնումի գործով: Եվ նա ինձ ասաց. «Օ, իմաստուն կին էր նա, կյանքն ու մարդկանց լավ էր հասկանում, գիտեր՝ ով ուժ ունի, ում կարելի է կաշառք տալ, ու տալ այնպես, կարծես դա նվեր է, կաշառք չի: Նա ուղղակի հրաշքներ էր գործում»: Լավ, ասենք թե Մինասը մեռնելուց առաջ նրան մի բան էր պատվիրել, բայց ի՞նչը ստիպեց Լուսինթագ Գարօղլանյանին, ի՞նչն է համոզել նրան՝ կատարելու ամուսնու կամքը: Չէ՞ որ նա կարող էր այդպես չշտապել: Դա և՛ ավելի ապահով կլիներ, և՛ ավելի հարմար: Կարելի էր, չէ՞, մեկ երկու տարի սպասել և հետո միայն տեղափոխվել Ամերիկա: Հնարավոր էր և մտածել, որ թուր-



1964 թ. մայիսի 17. Սարոյանը նստած է Բիթլիսի այն վայրում, որտեղ մի ժամանակ իրենց տոհմական տներն են եղել:
Սարոյանը օջախի մոտ, միակ քարը, որ մնացել է իր տատիկի՝ Գարոյանների ընտանիքից:

քական կառավարությունը հաշվի կառնի հայերի աշխատասիրությունն ու ընդունակությունները ու նրանց ձեռք չի տա: Այնպես որ՝ հարկ էլ չի լինի փախչել-գնալ:

ՊԵՏՐՈՍ— Ասացեք, հիմա ի՞նչ եք խորհում:

ԲԻԼ— Չգիտեմ, չգիտեմ: Իսկապես չգիտեմ: Այն քուրդն ասաց, որ հիշում է հորս, չնայած այն ժամանակ շատ փոքր է եղել: Նա տարավ ու ցույց տվեց մեզ այն տունը, որտեղ իր ծնողների, եղբայրների և քրոջ հետ ապրել է հայրս: Ազնիվ ու անկեղծ մարդ էր երևում այդ քուրդը, երևի մի յոթանասունչորս տարեկան լիներ: Սակայն ես չգիտեմ, չեմ հասկանում, ինչո՞ւ հորս տնից ոչինչ չի մնացել այդ բուխարուց զատ, այնտեղ, այն փողոցում, ինչո՞ւ բուխարուց զատ ոչինչ չի մնացել, միայն բուխարին, որի մոտ այսօր ինձ շարունակ նկարում էր լուսանկարիչը: Չեմ հասկանում: Չգիտեմ: Արդյո՞ք, գոնե, մոտավորապես դա այն տունն է, որտեղ մենք ապրել ենք: Չէի ուզի անշնորհակալ մարդու նմանվել, բայց այնպես եմ զգում, ասես այս ամենը սարքովի բան է: Ինչո՞ւ եմ այդպես մտածում:

ԱՐԱ— Որովհետև այդպես է իրողությունը, ու դա պատահական չէ: Անատոլիայի որդին այցելի պիտի իր նախնիների երկիրը, պարզ բան է, ուրեմն, պաշտոնյաները հարցուփորձ են արել և իմացել են, որ հայկական գերեզմանոցն ամբողջովին տեղահան է արված, քարերն օգտագործվել են հին տներն ու մայթերը կարգի բերելու համար: Թե ձեր շուրջը նայեք, անշուշտ, կտեսնեք հայկական տապանաքարերից մնացած բեկորներ, որոնց վրա հայերեն կարելի է կարդալ տարբեր անուններ. «Սարգիս Դա...», իսկ մնացածը չկա: Հարկավ նկատած կլինեք, թե մեզ ինչպես էին ընդունում Անկարայում, Մերզիֆոնում, Սամսունում, Տրապիզոնում, Էրզրումում, Վանում, Տատվանում և հիմա էլ ահա Բիթլիսում: Եվ ամենուր տեսել ենք միայն ջերմություն և հարգանք, էլ չասած Գիրեսունում ամբողջովին ձկնեղենից պատրաստված այն շքեղ ճաշկերույթն ու Ագրիում՝ Արարատի հենց լանջին ընկած այդ բընակավայրում տրված փառահեղ նախաճաշը: Անշուշտ, այդ ամենը կանխամըտածված էր և կազմակերպված:

ԲԻԼ— Բայց կարծես ռեստորաններն ամեն օր էլ ուտելիք են պատրաստում և պատրաստում են բոլորի համար:

ԱՐԱ— Ձեզ համար, սակայն, հատուկ սեղան էր պատրաստված, ու նաև հաշվի էին առել մեզ և երեք թուրք լուսանկարիչ լրագրողներին՝ Ֆիքրեթին, Ալիին ու Մեհմեդին: Նրանց պետք էր, որ դուք սիրով հիշեք Անատոլիան:

ԲԻԼ— Այո, կհիշեմ, անշուշտ: Եվ ինչո՞ւ չհիշեմ: Նրանք իմ առաջ կարմիր գորգ գցեցին: Եվ պիտի որ նրանցից շատ

շնորհակալ լինեմ, ու շնորհակալ եմ: Բայց ես միշտ երազել եմ գալ ու տեսնել Սարոյանների տունը, իսկ տեսա միայն այն փոքրիկ բուխարին: Ու երևում է, այդ բուխարին Սարոյանների ութը տներից մնացած միակ մասունքն է, ութը տուն, կառուցված այնպես, որ կազմում էին մի մեծ քառակուսի, ու մեջտեղում՝ դրսի աշխարհից առանձնացած սարոյանական այգին: Ինձ դուր էր գալիս մեր տան դիրքը՝ բարձր-բարձր, պատերից երևում էին սրածայր լեռնագագաթները, իսկ ներքևում աղմուկով գլորվում էր գետը, բայց հիմա չգիտի կարողանամ վըստահ լինել, որ Սարոյաններն ապրում էին հենց այստեղ, և դա կարծես խզում է իմ կապը Բիթլիսի հետ: Չեմ ուզում, որ այն լինի կեղծ, որ այդքան կեղծ լինի:

ՊԵՏՐՈՍ— Ես շատ եմ հետաքրքրվել և իմացել եմ, որ այստեղի միակ հայը այն ծերունին է, որին հանդիպեցինք քաղաքապետարանում: Նրա անունն անգամ հայկական չէ, իսկ քուրդ տղաները ծաղրում են նրան, որովհետև գիտեն, որ նա հայ է, ծեր է և ապրում է իր վերջին հույսով միայն՝ գնալ Բեյրութ և մեռնել հայերի մեջ:

ԲԻԼ— Խեղճ մարդ, իմ կարծիքով նա հերոս է: Կօգնե՞ք նրան, որ գնա Բեյրութ:

ՊԵՏՐՈՍ— Պիտի գրեմ նրա մասին իմ թերթում, թերևս գտնվեն մարդիկ, որ դրամ ուղարկեն նրա համար: Այո, հենց այդպես էլ կանեմ: Ու հոգ պիտի տանել նաև, թե Բեյրութում նա որտեղ է ապրելու: Այնտեղ մի ամբողջ հայկական թաղամաս կա, նույնիսկ խանութների անունները են հայերեն: Այ, այդտեղ էլ նրան կուղարկենք, որ գոնե մեռնելիս իրեն զգա յուրայինների մեջ, իր տանը: Թեև ծնվել է այստեղ՝ Բիթլիսում, իննսուն տարի առաջ:

ԲԻԼ— Բայց չէ՞ որ սա մեր տունն է: Բիթլիսը մերն է: Բիթլիսը իմն է: Եթե հիմա դա մեր երկրի մի մասը լիներ, ես կգայի ու կապրեի այստեղ: Եվ կգա մի օր, որ այդպես էլ կլինի: Ես համոզված եմ, որ մի օր սա նորից կլինի մեր հարազատ Բիթլիսը:

ԱՐԱ— Իսկապե՞ս: Ինչո՞ւ եք այդպես մտածում: Սենտիմենտալությո՞ւն է: Ցանկությո՞ւն:

ԲԻԼ— Թերևս: Նայեք ձեր շուրջը: Այս վայրը հայերի կարիքն է զգում: Եվ այն նորից կդառնա աշխարհի ամենագեղեցիկ և կարևոր քաղաքներից մեկը: Ահա թե ինչու եմ մտածում, որ Բիթլիսը մերն է, և իսկապես կդառնա մերը: Մենք պետք ենք նրան: Ուրիշները կարող են գնալ կամ մնալ, ինչպես կուզեն, իսկ Բիթլիսը մերն է:

ԱՐԱ— Այո, Բիթլիսը հայերի կարիքն է զգում, բայց նույնն են զգում և՛ Մուշը, որը մենք այսօր դեռ կտեսնենք, և՛ Վանը, որ արդեն տեսել ենք, և՛ Տիգրանակերտը, և՛ Խարբերդը, և ո՞վ կարող է ասել, որ հայերը պետք չեն Աթենքում, Հռոմում, Փարիզում, Լոնդոնում, Նյու Յորքում, Չիկագոյում, Սան Ֆրանցիսկոյում և Հոլիվուդում հատկապես: Այո, թվում է, թե այս բոլորը ծաղր է, բայց այդ ծաղրի մեջ ճշմարտություն էլ կա: Ասածս այն է, որ Բիթլիսը, իրոք, սպասում է հայերին, զգում է նրանց կարիքը, բայց նրանք այլևս երբեք չեն վերադառնա:

ԲԻԼ— Ես այդպես չեմ կարծում:

ՊԵՏՐՈՍ— Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո թուրքերը պատրաստ էին Հայաստանին վերադարձնել Բիթլիսը, Մուշը, Վանը, Ղարսը և Արդահանը, սակայն այստեղ ոտք դրեց Ամերիկան և պահելով թուրքական սահմանը, դրանով ապահով պատնեշ դրեց կոմունիզմի հնարավոր ներխուժման դեմ: Սակայն մեզ բոլորիս դա քաջ հայտնի է, այնպես չէ՞: Մենք բոլորս էլ գիտենք, որ պատմությունը ստորադրյալի դեր խաղաց մեր հարցում: Ահ, հիմա արդեն շատ ուշ է: Եվ ես այն ծերունին պիտի տեղափոխեմ Բեյրութ, նա կարող է խոսել ու քայլել հայերի հետ և մեռնելիս կմըտածի, որ մեռնում է իր տանը: Բայց պատկերացրեք միայն, մարդը, որ ծնվել է Բիթլիսում, պետք է գնա ուրիշ, բոլորովին ուրիշ մի տեղ, որ ինքն իրեն խաբի, թե իբր տուն է վերադարձել, և այս բոլորն այն պատճառով, որ Բիթլիսը զրկվել է իր իսկական բնակիչներից՝ հայերից:

ԲԻԼ— Խեղճ ծերունին պիտի գնա մի անծանոթ օտար քաղաք, որը նրա համար տուն է դառնալու, քանի որ այնտեղ հայեր են ապրում:

ՊԵՏՐՈՍ— Ահա Բիթլիսում ապրող հայերի ճակատագիրը: Նա վերջինն է, և տառապում է, որ տեսել է Բիթլիսը առաջ և տեսնում է հիմա, տառապում է, որովհետև դերեզմանոցն ամբողջովին ա-



Նկարը՝ ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

վերվել է, հատուկենտ մնացած քարերի արանքներում վայրի ծաղիկներ են աճում, ու հենց կողքին էլ եգիպտացորեն են ցանել, նա տառապում է, որովհետև մեր ամենագեղեցիկ եկեղեցիներից մեկը գոմ է դարձել, իսկ զանգակատանը աղավնիներն են բուն դրել: Եվ ուր էլ որ գնանք, երբ էլ որ մոտենանք հսկա քարերի տակից ժայթքող հանքային ջրերի աղբյուրներին, որոնցից միայն կովերն ու ձիերն են խմում, թուրքերն ու քրդերը միշտ հետևում են մեզ, կարծում են, որ եկել ենք մեր հայրերի թաղած ոսկիները հանելու: Տե՜ր աստված: Արա, դու քո ականջով լսեցիր, չէ՞: Չգիտեմ՝ դուք ինչպես, բայց ես ուրախ եմ, որ բոլորս հեռացել ենք այստեղից:

ԲԻԼ— Ես ուրախ չեմ: Բիթլիսը մերն է: Բիթլիսը իմն է: Բիթլիսը նրանց էլ է, նրանք նույնպես Բիթլիսի բնակիչներն են, և ով էլ որ լինեն նրանք, որտեղից էլ որ եկած լինեն, թող բարի լինի նըրանց գալը, բայց Բիթլիսը մերն է, այն իմն է, և երանի աստված այնպես աներ, որ ես կարողանայի մնալ: Ես իսկապես ուզում եմ մնալ:

ԱՐԱ— Դե, քաղաքագլուխը հրավիրեց ձեզ նորից այցելել Բիթլիս, այս անգամ արդեն որպես կառավարական հյուր: Եվ նա անկեղծ էր այնքան, որքան անկեղծ կարող էր լինել որևէ մի ուրիշ քաղաքագլուխ հյուր հրավիրելիս: Թերևս կարող եք օգտվել այդ հրավերից: Ամեն դեպքում, փորձեք, եթե իսկապես ուզում եք գալ, ապրել այստեղ և աշխատել: Դուք դրամ ունեք: Եվ կարող եք ետ գնել այն քարե տունը, որ սարքել են ձեր տատի՝ Լուսի Գարօղլանյանի զարմիկները՝ Տիգրանը և Արամը, որը հիմա պատկանում է մի քրդի: Դուք կարող եք նրան փող տալ, և նա կհրաժարվի ձեր տոհմական տնից: Այնուհետև կարող եք գնել այն հողը, որի վրա կանգնած էին Սարոյան ընտանիքին պատկանող ութ տները: Եվ, վերջապես, դուք կարող եք նորից կառուցել այն ութ տները և ձեզ ձեր սեփական տանը զգալ: Չէ՞ որ այս ամենը հնարավոր է իրագործել:

ԲԻԼ— Մի բան միայն սխալ է այստեղ: Քաղաքում հայեր չեն լինի, և ես մի մեկուսացված օտարականի կնմանվեմ: Ծագումով հայ, ամերիկացի մի գրող, որ երեսուն տարի դրամ է հավաքել, այժմ բավական գումար ունի, և ոչ միայն դըրամ, ունի և համբավ ու հանկարծ վերա-

դառնում է Բիթլիս և որոշում է վերականգնել իր տոհմական տները, շատ կարճ ժամանակում հարուստ քուրդ բիզնեսմենից գնում է իր տատի եղբայրների և ոչ թե զարմիկներին պատկանող տունը: Եվ ահա տեղափոխվում է իր գրադարանով, սկսում է մենակ ապրել այնտեղ, թափառում է, զբոսնում շրջակայքում: Մի խենթ հայ:

ԱՐԱ— Ուրեմն, ի՞նչ:

ԲԻԼ— Տարեք այն ծերունին ձեր անծանոթ քաղաքը: Բայց Բիթլիսը մեկն է, իմն է: Ինչպե՞ս, ե՞րբ մենք նորից այնտեղ կլինենք՝ չգիտեմ, բայց որ կվերադառնանք՝ դա հաստատ է, այլապես Բիթլիսից միայն փլատակներ կմնան: Ամեն ինչ շատ պարզ է:

ԱՐԱ— Սա արդեն բոլորիս գաղափարըն է: Թող հայերը շարունակեն նոր քաղաքներ կառուցել, գոնե առաջիկա երկու հարյուր տարում թող այդպես լինի: Ես նկատի չունեմ միայն Սովետական Հայաստանը: Թող ամենուր կառուցեն նոր քաղաքներ:

ԲԻԼ— Այստեղ ես խորը վիշտ եմ ապրում: Գերեզմաննոցն այլևս չկա, բայց ինձ թվում է, թե գիտեմ վաղուց մահացած բոլորին, ովքեր դարեր շարունակ ապրել են այստեղ, իմ ընտանիքի անանուն անդամներին, բոլոր այն երիտասարդ տղաներին ու աղջիկներին, կանանց ու տղամարդկանց, ծերերին. նրանք բոլորն այստեղ են, մեռած, ես էլ այստեղ եմ ապրում և զգում եմ նրանց, զգում եմ նրանց կենդանությունը, տեսնում եմ նրանց, լսում նրանց ձայները, զգում նրանց հոտը, և, օ, տեր իմ, դու ինձ օգնական, ձեզ էլ խնդրում եմ՝ ինձ ճիշտ հասկացեք: Ես Սարոյան եմ: Ես այստեղ եմ և կորցրել եմ իրականության և ճշմարտության բոլոր խոհեմ սահմանները: Ուզում եմ, որ լինի Բիթլիսը, ուզում եմ ապրել, քայլել, ուտել, խմել և քնել Բիթլիսում: Վաղը մեկնելու ենք Դիարբեքիր կամ Տիգրանակերտ, բայց ես ուզում եմ մնալ Բիթլիսում, մնալ ընդմիշտ: Ուզում եմ մեռնել այստեղ և միանալ բոլոր այն մեռածներին:

ԱՐԱ— Այն ժպտադեմ տղաները, որոնց ձեր ընտանիքի անդամներին եք նմանեցնում, ծաղր ու ծանակի էին ենթարկում այն ծեր հային՝ Մուշի Աղային հենց նրա համար, որ հայ է, խեղճ, ծեր հայ, և այդ խեղճ մարդն ամեն ինչին դիմանում էր արժանապատվությամբ, նույնիսկ երբ հրում էին, որ ցած գլորեն, իսկ նա այնքան էլ ուժեղ չէր: Ճիշտ է, ջահել են, շատ բան չեն հասկանում, բայց իրենց այդպես են պահում նաև այն պատճառով, որ քրիստոնյա չեն, հայ չեն և թվով ավելի շատ են: Ուժի մեջ էլ ինչ-որ տեղ վախ կա, դա նկատել եմ և՛ ամերիկացիների, և՛ անգլիացիների մեջ, բայց այս երկրի մարդկանց վախկոտությունը հանգում է այնպիսի մի վայրագության, որպիսին չկա և ոչ մի տեղ:

ԲԻԼ— Այո, այո, ոչ ոք էլ չի վիճում ձեզ հետ, դուք այստեղ ապրել եք և գիտեք բոլոր այդ բաները, իսկ ես եկա ու ասես երազի մեջ ընկա, և դեռ ուզում եմ, որ այդ անիրական ու անհեթեթ երազը շարունակվի, գեղեցիկ ու չքնաղ մնա: Թույլ տվեք այս մեքենայի պատուհանից վերջին անգամ լուսանկարեմ Բիթլիսը: Տեր իմ, չեմ տեսնում ոչինչ, որ ուզենայի հետս տանել: Դեպի արևմուտք գնացող այս նեղ ճանապարհը միայն ու մեկ էլ մեծ-մեծ քայլ գցող մարդիկ՝ քրդեր, քոչվոր քրդեր, որ հիմա քայլում են միասին՝ հայր, մայր, զավակներ: Իսկ ահա վերևում ի՞նչ է: Ամերիկացիներ են, իրենց բեռնատար մեքենայով կանգնած՝ հեռախոսալարերն են վերանորոգում: Տեր իմ, նրանք ամենուր են, երևի ոչ մի տեղ հնարավոր չլինի այնքան շատ ամերիկացի տեսնել՝ զինվորներ, նավաստիներ, դիվանագետներ, որոնք իրենց թույլ են տալիս միջամտել տվյալ ժողովրդի գործերին, ասելով, թե հեշտացնում են նրանց կյանքը, չգիտեմ, իսկապես ոչինչ չեմ ուզում նրանցից, ոչ էլ ուզում եմ տեսնել նրանց Բիթլիսում, էշին նստած: Բայց ահա, խնդրեմ: Բիթլիսը հիմա վաղուց արդեն կպատկաներ Սովետական Հայաստանին, եթե ամերիկացիները իրենց կառչուն ձեռքերը ետ քաշեին: Չգիտեմ, շատ եմ տխրում՝ թողնելով այս վայրը, բայց և ուրախ եմ իմ այստեղից հեռանալու համար: Ես պետք է գայի, պետք է տեսնեի, եկա, տեսա, տրխրեցի, ուզում եմ հեռանալ այստեղից, բայց... ինչ-որ բան ինձ տանջում է, ու չգիտեմ, թե ինչ: Ի՞նչ է դա, ի՞նչ է դա:

ԱՐԱ— Հայի վիշտը աշխարհագրություն չէ միայն, տեղից-տեղ փոխվելը, այն ավելի խորն է, ու ոչ ոք, ոչ մի տեղ այդ չի կարող դարմանել: Այդ վիշտը իմն էլ է, ու ստիպում է ինձ երգել, այնպես, որ դուք էլ երգեք ինձ հետ, հայի ու գինու գովքը երգենք, ուրիշ ոչինչ:

ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

# Տավրոս Գալշոյանին

— Արեգակը նրա տեղավորվեց քո մեջ,
Եվ դու ապրես պիտի լույսերի մեջ քո հոր:
ԴԱՅԱՆԱ ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Տավրի՛կ, Գալշոյի ծոռ, Տավրի՛կ, պստի՛կ տղա,
Տավրի՛կ, փոքրիկ զինվոր, Տավրի՛կ, մանուկ հեծյալ,
Արքա հայրդ եկավ, ապրեց, կռվեց, գնաց՝
Իր միացող-բորբոք վրեժը քեզ թողած:

Ծառս է եղել, նայիր, նրա նժույգն արդեն
Վրնջում է տենդոտ և սպասում է քեզ…
Դու ես քո հոր Ցավի արու ժառանգորդը,
Ոտքի՛ ելիր, քայլի՛ր հպարտ ու ոսկեգես:

Դու՝ կրակով լեցուն, ըմբոստ և անձնվեր,
Վե՛ր կաց իսկույն, հագիր, կապիր զենք ու զրահ,
Եվ ընթացքդ ուղղիր Սասնա լեռներն ի վեր,
Մարութա սարն ի վեր նժույգդ թող սուրա:

Հիշիր, որ սերվել ես հին ու ծուռ քաջերի
Կորուստներով թրծված տոհմից ազնվազարմ…
Պահիր հիշատակի քուրան անհանգչելի,
Դու՝ նորելուկ սեպուհ, դու՝ խենթ, դու՝ պայազատ:

Թող քեզ գոտեպնդեն կարոտները անծիր,
Ծառաչելով իջիր Սասնա լեռներն ի վար,
Իբրև հույս ու փրկիչ՝ Մշո դաշտով անցիր՝
Ցավին, երազներին, հուշին քո խառնված:

Մեր կուռ՝ ինչպես բերդի սյուները քանդակած՝
Անմահ կտրիճների զորավոր Ցեղը կա…
Թող ամոքի վերքդ մեր կարմիրը որդան,
Քեզ զորավիգ լինի բոցը մեր եղեգան:

Տավրի՛կ, փոքրիկ տղա, Տավրի՛կ, Գալշոյի ծոռ,
Տավրի՛կ, մանուկ հեծյալ, նետաձիգ ու զինվոր…
Թող քեզ զուգեն քո հոր լույսերը ծովացող,
Եվ դու պիտի ապրես լույսերի մեջ քո հոր:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Համշենցի հայերի բնօրրանը եղել է Բաթումից (Ափսարունտ) Սինոպ ընկած ծովահայաց տարածքը:

Համշենի բարբառը հարուստ է, և մեկն է այն բարբառներից, որ ամենամոտն է կանգնած հնդեվրոպական մայր լեզվին:

Հայոց հնագույն աստվածների՝ Արամազդի, Անահիտի, Նանեի, Աստղիկի, Տիրի, Վահագնի ու ուրիշների արձանները են կանգնած եղել համշենցիների բնակավայրում՝ ծովափերին և սարերի վրա, դրանց մեծ մասը կործանվել են քրիստոնեության մուտք գործելու ժամանակ, սակայն դեռ այսօր էլ կանգուն են մնացել շատ վիշապների, ձկների և այլ տոտեմների արձանները. Սրբահան առվակի ակունքում, Հովտակ և Պալակցիա լճերի ափերին, Ծորոխի ավազանում, Ալիս գետի հովտում և այլուր:

Հայոց Վաղարշակ թագավորը այս մառախլապատ, լոռավետ տեղերում հիմնում է որսատեղ և ամառանոց: Գրիգոր Լուսավորիչն ու Տրդատ թագավորը հիմնում են վանքեր ու տարածում քրիստոնեական կրոնը: Ավարայրի ճակատամարտից հետո, հայոց զորքը Վարդան Մեծի եղբոր՝ Համայակ Մամիկոնյանի ղեկավարությամբ, պատսպարան է գտնում Համշեն գավառում՝ Պարխար աշխարհի Քաջքար լեռան անմատչելի տեղերում և թիկունք ունենալով համշենահայերին՝ ջախջախում է պարսիկների զորքը և ետ շպրտում: Համշեն գավառում են ապաստան գտնում Արարատյան աշխարհից արաբների կողմից հալածված 12 հազար հեծյալ և բազմաթիվ ժողովուրդ՝ Ամատունի իշխանի առաջնորդությամբ, 789 թ.-ին:

Քառասուն կիլոմետր երկարության վրա քառասունից ավելի ամրոցները և



Անդրանիկ Չեյթունյանը վաստակաշատ մանկավարժ էր: 1934—1967 թթ. նա աշխատել է Աբխազիայի և Կրասնոդարի երկրամասի մի շարք հայկական դպրոցներում՝ որպես ուսուցիչ, ուսմասվար, դիրեկտոր, Գագրայի և Ադլերի շրջաններում՝ հայկական դպրոցների տեսուչ: Նրա նախաձեռնությամբ Աբխազիայում և Կրասնոդարի երկրամասում ստեղծվել են գրական խմբակներ, համշենահայ ազգագրական պարախմբեր, համշենահայ մշակութային միավորումը, ցուցահանդեսներ, թանգարաններ

# Որսորդը

Լինում է, չի լինում, մի որսորդ է լինում: Վերցնում է հրացանն ու գնում որսի: Վաղ առավոտյան մի նապաստակ դուրս էր եկել շրջելու: Հրացանն ուղղում է նապաստակի վրա ու ինքն իրեն խոսում. «Կսպանեմ նապաստակը, միսն ու մորթին կծախեմ, մի թուխս կգնեմ՝ մանըր ճտերով: Երբ ճտերը մեծանան, թուխսը ճտերի հետ կծախեմ ու մի էշ կգնեմ, էշով փայտ կտանեմ քաղաք ու կվաճառեմ: Երբ մի քիչ գումար հավաքեմ, էշն էլ կծախեմ ու մի ձի կգնեմ: Հավաքածս փողերով խանութ կբացեմ, առևտուր կանեմ, երբ մեծ գումար հավաքեմ, ագարակներ կգնեմ, բոստան կցանեմ: Երբ ձմերուկն ու սեխը հասունանան, պահակներ կվարձեմ, որ գողերից պաշտպանեն, ու ինքս էլ մեկ-մեկ գողտուկ կգնամ ու հանկարծ կկանչեմ.

— Էհե՜յ, անբաններ, լավ հսկեցեք...

Նապաստակը, լսելով նրա ձայնը, նետվում է թփերի մեջ ու անհետանում:

Փոխադրված է Համշենի բարբառից

բերդերը, հարյուրավոր դղյակները և գյուղերը, վանքերն ու եկեղեցիները, տոտեմների բազմաթիվ արձաններն ու աստվածների բագինները վկայում են այս երկրի ծաղկումը: 15-րդ դարում ունեցել է բարձրագույն ուսումնական հաստատություն՝ րաբունապետ Հովհաննես Համշենցու տնօրինությամբ և Դավիթ Բեկ իշխանի հովանավորությամբ:

Թուրք բարբարոսների նվաճումից հետո էլ դեռ մինչև 1915 թիվը Համշենում և այլ համշենահայ շրջաններում հայ բընակիչները կարողացել են պահպանել իրենց կուլտուրան:

Թուրք բարբարոս իշխանության դաժան վերաբերմունքի և 1915 թ. ցեղասպանության հետևանքով, համշենի ժողովուրդը ֆիդայական կռիվներ մղելով թուրք ջարդարարների դեմ, կարողացավ մասամբ տեղափոխվել Սև ծովի հյուսիսարևելյան ծովահայաց սարալանջերը՝ Աբխազիա, Կրասնոդարի երկրամաս, որտեղ ամայի, անտառախիտ վայրերում հիմնեցին իրենց նոր բնակատեղերը, որոնց թիվը այժմ 350-ից անցնում է: Հիմնեցին իրենց եկեղեցիները, դպրոցները, ակումբները: Հրատարակեցին թերթեր, գրքեր: Բացեցին թատրոն, մանկավարժական ուսումնարան: Հիմնվեց համահամշենահայ մշակույթի միավորումը, որը համախմբեց գրողներին, նկարիչներին, փայտանկարիչներին, աշուղ-երգահաններին, նվագողներին, պարախմբերը՝ «Հըմշեծիկ», «Թրթռուկ», «Ջնիգ», «Թերգիյան», որոնց միջոցով վերականգնվեց համշենի ցաքուցրիվ եղած կուլտուրան:

Համշենահայությունը ունի հարուստ բանահյուսություն՝ հեքիաթ, զրույց, առած, առակ, առասպելներ, երգեր, մանիներ և այլն:

ԱՆԴՐԱՆԻԿ ՋԵՅԹՈՒՆՅԱՆ

# ՇԷՆ



և այլն: Տարիներ շարունակ նա իր նախաձեռնությամբ հայկական դպրոցների աշակերտներին բերում էր Հայաստան՝ մոտիկից ծանոթանալու հայրենիքին:

Մեծ է Ջեյթունյանի վաստակը Համշենի բանահյուսության և ազգագրության հավաքման գործում: Նրա հավաքած բազմահարուստ նյութերը պահվում են Հայաստանի մի շարք թանգարաններում: Նա մեր ամսագրին էլ էր բանահյուսական նյութեր տրամադրել, որոնք համշենահայության մասին նրա գրած փոքրիկ խոսքի հետ ներկայացնում ենք ընթերցողի ուշադրությանը:

## Աշուն

Աշուն է, աշուն,
Ոսկեհեր աշուն.
Չքնաղ նազանքով,
Հանդարտ պարելով
Տերևն է թափվում
Դեղնած անտառում:
Սարյակ ու լորիկ
Մեզնից հեռանում,
Արջն է օրորվում
Սարի ծմակում:

ՆԱՐԻՆԵ ՎԱՐԻԲՅԱՆ
Աբխազիա, Լեսելիձեի հայկ. դպրոց, 7-րդ դասարան

## Առածներ

Ագահ մարտուն աճկը, պուռմը խողը գըշտըծընա գու:
Ագահ մարդու աչքը, մի բուռ հողը կկշտացնի:

Բարաբ խոսկով ճվալ չի լըծվիլ:
Դատարկ խոսքով ջվալ չի լցվի:

Եզը լըձին չի վախիլ:
Եզը լուծից չի վախենա:

Էլի յեղ ու մեղրըն լավ ա, թթու թոնը՝ քու դոնը:
Ուրիշի մեղր ու կարագից լավ է թթու թանը՝ քո տանը:

Ջառը քոկով, մարտը պարէգամով դայիմ ին:
Ծառն արմատով, մարդը բարեկամով է ամուր:





ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# Արշակունիների գահն ամրապնդվում է

Տրդատ Առաջին Արշակունու թագավորելը Հայաստանի համար մի շարք տարիների խաղաղության սկիզբ դրեց: Հայաստանի և Հռոմի հարաբերությունները կարգավորվեցին. հարյուր տարի անց վերականգնվեց այն վիճակը, որը հաստատվել էր Տիգրան Մեծի և Պոմպեոսի միջև մ. թ. ա. 66 թ. Արտաշատում կնքված պայմանագրով: Ըստ դրա՝ Հայաստանը համարվում էր հռոմեական ժողովրդին դաշնակից և բարեկամ: Այս ձևակերպման տակ Հռոմը հասկանում էր գերիշխանություն Հայաստանի նկատմամբ, իսկ հայերն այն մեկնաբանում էին իբրև Հայաստանի անկախության և Հռոմի հետ պարզ բարեկամության բանաձև: Եվ իրոք, Տրդատ I-ի ժամանակ Հայաստանը լիակատար անկախություն ուներ. արևելքից հայերը սերտ բարեկամություն էին պահպանում պարթևների հետ, արևմուտքում լավ հարաբերություններ ունեին Հռոմի հետ: Թագավորը հայոց գահ բարձրանում էր պարթևների համաձայնությամբ, իսկ Հռոմը ձևականորեն հաստատում էր գահակալությունը: Նախքան այդ, Մեծ Հայքից բավական ժամանակ անջատված Ծոփքը նորից միացվեց մայր երկրին, և այդ բանին օժանդակեց Հռոմը: Մեծ Հայքը պահպանում էր իր ամբողջությունն այն սահմաններում, որը կար Տիգրան Մեծի կյանքի վերջին շրջանում: Ավելին, հայերը ձգտում էին Մեծ Հայքին միացնել նրանից հարավ-արևմուտք գտնվող Օսրոյենե երկիրը, որ Ասորիքի մի մասն էր:

Այդ ժամանակաշրջանում պարթևների թագավորությունը սկսել էր թուլանալ: Դա երկու գլխավոր պատճառ ուներ: Առաջինն այն էր, որ Հյուսիսային Կովկասից պարթևական պետության վրա անընդհատ հարձակվում էին լեռնականները՝ ալանների (օսերի) ղեկավարությամբ: Նրանք շարունակում էին հարձակվել նաև Վրաստանի ու Հայաստանի վրա: Մյուս կողմից, Պարթևական կայսրության արևելքում գոյացել էր Քուշանական հզոր պետությունը, որը լրջորեն նեղում էր պարթևներին: Քուշանների օգնությամբ Պարթևստանից անջատվեցին նրա հյուսիսային և հյուսիս-արևելյան որոշ մասերը:

Պարթևները և հայերը խնդրեցին Հռոմին պաշտպանելու կովկասյան լեռների ուղիները լեռնականների հարձակումներից: Հռոմը զորքեր տեղադրեց այդ լեռնանցքների ու ճանապարհների վրա:

Ըստ որոշ հաշվումների՝ Տրդատ I-ը մահացել է 88 թվականին: Նրան հաջորդել է Սանատրուկ II-ը, որը, հավանաբար, հայոց գահ է բարձրացել նախքան Տրդատի մահը: Ըստ հռոմեական պատմիչ Արիանոսի վկայության՝ «Հայոց թագավոր Սանատրուկը միջահասակ էր, բայց մեծ գործերի սեր ուներ, մանավանդ՝ ռազմական գործերի: Նա արդարադատության հավատարիմ պահապան էր, կենցաղով զուսպ, չափավոր ու ողջախոհ՝ ինչպես հույներից և հռոմեացիներից լավագույնները»:

Սանատրուկ II-ը 91 թ. նվաճեց Օսրոյենե երկիրը՝ Եդեսիա գեղեցիկ քաղա-

ՈՒՂՂՈՒՄ. Մեր ամսագրի այս տարվա 1-ին համարի 19-րդ էջում տպագրված հռոմեական դրամի մակագրությունը կարդալ ոչ թե «Հայաստանը պատժված», այլ՝ «Հայաստանը պարտված»:

քով ու այն միացրեց Մեծ Հայքին: Նա Արածանի գետի հովտում, ուր Բյուրակն գետը միանում է Արածանիին և որտեղ գտնվում էր հայերի կրոնական հին կենտրոն Աշտիշատը, կառուցեց նոր մայրաքաղաք Մծուրք անունով: Դա նաև մշակութային կենտրոն էր: Այդտեղ է ապրել Մարաբա փիլիսոփան, որը, ըստ Սեբեոս պատմիչի վկայության, գրել է Հայոց պատմություն: Նույն Սեբեոսի վըկայությամբ՝ Մծուրքում Սանատրուկ թագավորի պալատի դիմաց եղել է հունարեն արձանագրություն, որտեղ գըրված էր հայ և պարթև առաջին թագավորների պատմությունը:

Առաջին դարում թե՛ Հռոմեական կայսրության մեջ և թե՛ Մեծ Հայքում ու Պարթևստանում տարածվում էր քրիստոնեությունը: Քրիստոնյաները իրենց ուսմունքը գաղտնի էին տարածում, Հռոմում էլ, Հայքում ու Պարթևստանում էլ նրանց խստորեն հալածում էին՝ գցում էին վայրի գազանների առաջ, խաչում էին, տանջում ու սպանում: Բայց ինչքան մեծանում էր հալածանքը, քրիստոնեությունն այնքան շատ էր տարածվում: Քրիստոնյաների այդպես սպանվելը կոչվում էր նահատակություն, սպանվողները համարվում էին նահատակներ:

Հայաստանի համար քրիստոնեության ընդունումը վճռական նշանակություն էր ունենալու երկրի հետագա ամբողջ պատմության ընթացքում: Ուստի՝ մի քանի խոսք քրիստոնեության ծագման մասին:

Քրիստոնեությունը ծագել է Հռոմի իշխանության տակ գտնվող Հրեաստանում, այդ երկրի հյուսիսային Գալիլեա երկրամասում: Քրիստոնեության հիմնադիրը Հիսուս Նազարեթցին (Նազովրեցին) է, որ հետո կոչվեց Քրիստոս: Նա ծնվել է 1 թվականին և բնակվել է Գալիլեայի Նազարեթ քաղաքում, աշխատել է որպես հյուսն (ատաղձագործ): 30 տարեկանից սկսել է քարոզել իր ուսմունքը: Այդ ուսմունքի մասին պատկերացում կազմելու համար մի քանի օրինակ բերենք Նազարեթցու խոսքերից. «Երանի խաղաղություն անողներին», «Խաղաղություն ձեզ», «Ես եկա, որ ճշմարտության համար վկայեմ», «Ուրիշի նկատմամբ վարվիր այնպես, ինչպես որ ուզում ես ուրիշը քեզ հետ վարվի», «Քո մտերիմին սիրիր ինչպես ինքդ քեզ», «Բարի արեք ձեզ ատողներին», «Երանի նրանց, որ սրտով մաքուր են», «Ներիր քո դեմ մեղանչողներին», «Երանի նրանց, որ հալածված են արդարությունը պաշտպանելու պատճառով»: Հետո հրեաների քահանաները ու քահանայապետը Նազարեթցուն մահվան դատապարտեցին և հանձնեցին հռոմեացի կուսակալ Պիղատոս Պոնտացու ձեռքը: Հռոմեական կայսրության մեջ հռոմեացիներին մահապատժի էին ենթարկում գլխատելով կամ ձեռքի երակը կտրել տալով, իսկ ոչ հռոմեացիներին խաչում էին, ձեռքերն ու ոտքերը մեխում էին փայտե խաչին ու այդ կերպ սպանում: Հիսուս Նազարեթցուն այդպես խաչեցին:

Այս գաղափարներն էին պատճառը, որ քրիստոնեությունը շատ արագ տարածվեց աշխարհում և առաջին դարում հասավ Հայաստան, Պարթևստան, նույնիսկ, ըստ որոշ տվյալների, Հնդկաստան:

Ըստ հայկական հին ավանդության քրիստոնեությունը Հայաստան բերել են Հիսուս Նազարեթցու երկու աշակերտները, որոնք կոչվում էին առաքյալներ: Այդ պատճառով հայոց եկեղեցին կոչվում է Առաքելական:

Առաքյալներից մեկը Թադեոսն էր, որը եկավ Հայաստանի Արտազ գավառը Սանատրուկ 1-ի (Արշակի) օրոք և մընաց այստեղ 35—43 թվականների ընթացքում: Նրա քարոզչությամբ շատ հայեր, այդ թվում Սանատրուկի աղջիկը՝ Սանդուխտը, քրիստոնեություն ընդունեցին: Հայոց թագավորը սպանում էր քրիստոնյաներին: Նրա աղջիկն էլ, Թադեոսն էլ նահատակվեցին: Թադեոսի գերեզմանի տեղում վանք է կառուցված (Թադեի վանք, Մակու քաղաքի մոտ):

Քրիստոնյա եկեղեցիների ավանդության համաձայն, Հայք եկած մյուս առաքյալը Բարդուղիմեոսն էր, որը նախ Պարթևստանում էր քարոզում, ապա՝ Սյունիքում և Գողթան գավառում: Նրա քարոզչությամբ նույնպես շատ հայեր, այդ թվում թագավորի քույր Ոգուհին, քրիստոնեություն ընդունեցին: Սանատրուկը դրանց էլ սպանել տվեց: Բարդուղիմեոսի գերեզմանը Մեծ Հայքի Աղբակ գավառում է (Ուրմիա լճից հյուսիս-արևմուտք):

Մինչև 301 թվականը Հայաստանում քրիստոնեական համայնքները մնացին գաղտնի և հալածական, իսկ այդ թվականին քրիստոնեությունն ընդունվեց իբրև համազգային կրոն:

(շարունակելի)

**ԿԱՐԱՊԵՏ ՈՍԿՅԱՆ**
**(1869—1901)**

# Երգ

Իրիկվան դեմ, երբ որ արև
Յուր օրհասի փայլմամբք հետին
Պճնե գծաղիկ և զտերև
Եվ անհետի լերանց ետին,
Երբ սևաթույր մեծ-մեծ ամպեր
Ծածկեն զանույշ երկնից ճակատ,
Եվ թռչնեկաց գաբնանաբեր
Դադրին մնջյունք խաղաղակաթ,
Երբոր լուսնակ, աստղունք գոհար
Շիրմաց վերա փայլին անդորր,
— Հեծե հոգիս, և վշտահար՝
Աչկունքս արցունք թափեն՝ պղտոր:

Բայց երբ առտուն՝ դեռաբուսիկ
Կարմիր ճաճանք արշալույսին
Վաղահարույց իբր ըզկուսիկ
Հորիզոնեն ի վեր խուսին,
Երբոր թռչնիկք չքնաղագեղ
Երգեն փափիկ ծառոց վերան,
Եվ ոսկեթև թիթեռունք շըքեղ
Ծաղկե ծաղիկ վազեն, սուրան,
Երբ քաղցրահամ շուշան ու վարդ
Սփռեն անույշ բուրմունքս ի վեր,
— Խնդա հոգիս և սիրտ զվարթ,
Երգեմ, մոռնամ վիշտ ու ցավեր:

# Զմեռ սգավոր

Որքան տըխուր ես ու որքան մըթին,
Ով ձըմեռ, եղբայր ես վըշտիս համար.
Այլուր միշտ զըվարթ ծաղկունք կը փթթին,
Չեն, ախ, չեն անոնք իմ սրտիս համար,
Որքան տըխուր ես ու որքան մըթին:

Իմ կյանքս ալ քեզի պես զուրկ արևե, ,
Ընդվայր հոս կ'անցնի անլուռ ցավերով.
Կարճ է այն, բայց ինչ երկայն կը տևե.
Ահ, քանզի չըկա հոն սեր ու գորով.
Իմ կյանքս ալ քեզի պես զուրկ արևե:

Մրրիկն երբ պայթի, կը դադրին երգեր,
Պանդուխտ կը մեկնին թռչունք սիրտ ի ցավ.
Պանդուխտ անոնց պես աշխարհ եմ եկեր,
Երգը սրտիս մեջ շատոնց դադրեցավ.
Մրրիկ երբ պայթի, կը դադրին երգեր:

Ծակատըս խորշոմ ցավոցս է վըկա,
Ախ, իմ քայլերուս տակ վարդ չի բուսնիր.
Չըսավ ինձ հրեշտակ մը «քեզի եկա».
Կը թափե գիս բախտն անվերջ արհավիր.
Ծակատըս խորշոմ ցավոցս է վըկա:

Մինակ, միս մինակ երթալն է դժվար,
Ցավերով լեցուն անդարձ այս ուղին.
Ախ, սիրտ չը բավեր, տքտում հոգեվար,
Մինչև պաղ ու մութ հողե անկողին
Մինակ, միս մինակ երթալն է դժվար:

Իջիր, ով ձըմեռ, իջիր իմ գլխույս,
Տերևներն ինկան ցամքած ու փտուն.
Երազք իմ սրտես շատոնց տըվին խույս,
Իմ դատարկ սրտիս դուն կը վայլես, դուն.
Իջիր, ով ձըմեռ, իջիր իմ գլխույս:

Ծածկեն, ախ, ճերմակ ձյուներ թող ծածկեն,
Սըգապատ իմ սիրտս ու ճակատս այրած.
Մոռացության ցողն իջնա երկինքեն,
Ու մենիկ այն փոսն, ուր կերթամ հոգնած՝
Ծածկեն, ախ, ճերմակ ձյուներ թող ծածկեն:

# Պարկեշտություն

Սիրեմ ըզվարդ չքնաղագեղ
Շարժուն տաճար քաղցրաբուրիկ,
Զանույշ շուշան, զհասմիկ շըքեղ,
Ոյր ցողն այգուն տա համբուրիկ:

Ըզսիրատարփ սիրեմ թռչնակ,
Ոյր երգն հոգվույս ցրե զթախիծ,
Զանմահ սոխակ և զաղավնյակ,
Տիպարք անճառ սիրո անբիծ:

Սիրեմ չքնաղ ես զարշալույս,
Գեղածիծաղ ի գույն վարդին,
Երբ քաղցրածոր իբրև ըզլույս
Շողք յուր ի խոր սրտիս կաթին:

Այլ առավել սիրեմ ես բյուր
Ըզկույս գողտրիկ պարկեշտասուն,
Հոգյակն ամեն խնդից ըսփյուռ,
Հայացքն անխաբ և միտքն հասուն:

Վաղամեռիկ բանաստեղծների համար ստեղծագործելը երևի թե կյանքը գեղեցկորեն երկարաձգելու հուսահատ ճիգ է եղել:

Կարապետ Ոսկյանի կյանքն անցավ թոքատապի դեմ ապարդյուն կռիվ մղելով: Բայց կյանքի մայրամուտին սաստկացող «տապի նոպաները» ամենևին էլ չխանգարեցին ստեղծագործելուն: Բնությունն էր միակ մխիթարիչը, որի ներշնչմամբ նա համակ զգացում և ներդաշնակություն դառած «արտերուն կը խոսեր»:

Կորյուն Մկրտիչյանը հայոց Մշո աշ-

## ԿՈՐՅՈՒՆ ՄԿՐՏԻՉՅԱՆ
(1866—1892)



Թե ինձ խոսք կուտաս քող մը երեսիդ
Քաշել որ ոսկի սիրուն արշալույս
Չը մթնի հանդեպ երկնային լույսիդ,
Ես քեզ կբանամ սրտիս փակ դռներ:

Թե ինձ խոսք կուտաս, որ բոցերդ անհուն
Սրտիս պես չայրեն, չմրրկեն զաշխարհ
Եվ ստվեր չածեն արև շողերուն,
Ես քեզ կբանամ սրտի փակ դռներ.

Իսկ եթե անքող աշխարհին ծագես
Հրեղեն լույսերու ոսկի ճաճանչներ,
Ի զուր, կը սոսկամ, կ'այրես, կմրրկես,
Ես քեզ սրտիս մեջ միշտ փակ կը պահեմ:



Ձյուներու ծաղիկ, հողմերեն խլված,
Մայրենի անուշ հողեն զրկված,
Ափսոս քեզ, ծաղիկ, պիտի թորշոմիս.
Դեռ մեզ կենսավետ գարուն չի բերած,
Ո՞վ գիտե, մեկ ալ, ե՞րբ պիտի ծաղկիս,
Ի՞նչ գարնան արդյոք դու ավետաբեր,
Մեզ ի՞նչ օրերու նշան պիտ լինես,
Մինչ այն օրն արդյոք պիտ ապրի՞մ ես դեռ:



Սուր թևեր ունիս, թռիր, անդ գնա,
Ուր մարած կրակի դեռ մոխիրը կա,
Երգե քո հին երգ:
Երգե ու մարած
Երկնից կրակի մոխրած կայծերուն
Հով շնչե, թող բոցն ելնե ճարճատուն
Վերև կամարուած:
Երկինք առ պարգև
Անուշիկ իմ երգ, քեզ է պարգևեր,
Թող բոցը հասնի, փեռեկե ամպեր,
Որ ծագե արև:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

խարհի Ջիարեթ գյուղից էր: Ավարտում է Էջմիածնի Գևորգյան ճեմարանը և մեկնում Կարին, աշխատում Սանասարյան վարժարանում: Թվում էր՝ ամեն ինչ բարեհաջող է ընթանում վարժարանի «սաներե կողմե սիրված» ուսուցչի համար, բայց անակնկալ հիվանդությունը նրան գամում է անկողնուն, և օրեր անց նա մահանում է:

Իբրև բանաստեղծ Կորյուն Մկրտիչյանը կենդանության օրոք չճանաչվեց: Միայն հետագայում՝ 80-ական թվականներին սփյուռքահայ անվանի գրող Համաստեղի ջերմ առաջաբանով մամուլում տպագրվեց բանաստեղծությունների մի շարք:

ԱՐԹՈՒՐ ԱՆԴՐԱՆԻԿՅԱՆ

# «ԹՌՉՆՈՑ ԲՈՅՆԻ» ԲԱՐԻ ՄԱՅՐԻ



Ամեն անգամ, երբ բարձրանում ենք Ծիծեռնակաբերդ՝ խոնարհվելու 1915 թվի Մեծ եղեռնի զոհերի հիշատակին, անպայման հիշում ենք նաև նրանց, ովքեր մեր ժողովրդի ողբերգական օրերին հոգով, գործով ու խոսքով մեզ հետ եղան: Նրանք իրենց ապահովության ու կյանքի գնով կիսել են մեր տառապանքները, փրկել հազարավոր հայերի: Արմին Վեգներ, Ֆրանց Վերֆել, Վալերի Բրյուսով, Ֆրիտյոֆ Նանսեն, Մաքսիմ Գորկի, Լեփսիուս, Յոզեֆ Մարկվարտ, Անատոլ Ֆրանս, Բրայս, Սերգեյ Կիրով: Եվ նրանց կողքին մի թանկ անուն ևս. Մարիա Յակոբսոն:

Մատենադարանի բյուրավոր գրքերի մեջ կա մեկը, վերջերս հրատարակված Լիբանանում, որի կազմին ազնվազարմ տեսք ու պահվածքով մի կնոջ դիմանկար է դրոշմված. նա է, Մարիա Յակոբսոնը, հայերեն և դանիերեն լեզուներով մոտ 1000 էջանոց գիրքն էլ իր «Օրագրությունն» է, որ լույս են ընծայել մեր երախտապարտ հայրենակիցները:

Հրատարակիչները դեռևս 1954-ին եղել են Մարիա Յակոբսոնի մոտ, խնդրել մի քանի լուսանկար՝ Խարբերդի վերաբերյալ: Նա սիրով տվել է իր ալբոմը և ոչ մի խոսք չի ասել, որ ունի օրագիր, ուր սրտի անհուն կսկիծով գրառել է Խարբերդում ու շրջակայքում կատարված դեպքերը, որոնց ականատեսն ու անմիջական վկան է եղել: Նրա մահից հետո է իմացվում օրագրերի մասին և մեծագույն ջանքերի գնով գտնվում ու դրվում է ընթերցողի սեղանին: Դա ոչ միայն հզոր վավերագիր է թուրքական իշխանությունների վայրագությունների, այլև գրքի հեղինակի բացառիկ ու հերոսական կյանքի պատումն է:

Բեյրութից 40 կմ վրա գտնվող Ջիբեյլի բնակավայրն այսօր ավելի շատ ճանաչված է «Թռչնոց բույնով», որի հիմնադիրը եղել է Յակոբսոնը, և նրա սաներով, որոնք դուրս են եկել մանկական այս ուրույն կրթօջախից: Նա, թեև դանիացի է, իրեն համարել է նաև հայ ժողովրդի դուստրը, իսկ նրան իր բազմահազար հայ սաները Մամա են անվանել:

Ծնվել է Դանիայի Հորսնս քաղաքում, 1887 թվականին, բարեպաշտ ու ազնիվ ընտանիքում: Դեռ մանուկ էր նա, երբ աշխարհի թերթերը լուրեր էին հաղորդում 1895—96 թթ. հայկական կոտորածների մասին: Ադանայում, Մարաշում, Կիլիկիայում նահատակվել էին հազարավոր անմեղ հայեր: Վայրի մոլուցքի զոհ էին գնում գրքեր ու մագաղաթներ, աղջիկներին ստիպում էին պարել որպես կենդանի ջահեր, ցից էին հանում մանուկներին, սրածում տղամարդկանց: Մի անգամ Մարիան ներկա է լինում Սիկրիտ Քյուրքի բանախոսությանը՝ հայոց տառապանքների ու ջարդերի մասին: Նրա նուրբ հոգին ալեկոծվում է. ինչո՞վ օգ-

նել «արցունքի հովտի» տառապյալներին: Մի ճանապարհ կար. դառնալ գթության քույր: Եվ 15-ամյա Մարիան այդ ճանապարհն է ընտրում: Դեռ դպրոցական էր, ճամփան շեղում էր, անցնում





հիվանդանոցի մոտով, որ դիտի հիվանդներին, մոր հետ կարեկցանքով զրուցում էր խնամքի ու գուրգուրանքի կարոտ փոքրիկների մասին: Մայրը չարգելեց, որ բարձրագույն վարժարանն ավարտելուց հետո Մարիան աշխատի քաղաքի հիվանդանոցներից մեկում: Եվ երբ ներկայանում է հարմար առիթը, Մարիան առանց տատանվելու որոշում է մեկնել Խարբերդ: Թողնելով ընտանեկան սեր ու կարոտ, ծննդավայր ու ապահով կյանք, բռնում է անծանոթ երկրի ճամփան: Նա դեռ չէր պատկերացնում, թե ինչ դժոխք է գնում: Ականջներում հնչում էր բանախոսի ձայնը. «Հայ ժողովրդին օգնության փութալը մարդկային պարտականություն է»: Քսանամյա աղջիկը գնում էր իր ուժն ու երիտասարդությունը անշահախնդրորեն նվիրելու հայությանը:

7 սեպտեմբերի, 1907— «Այս օրը չպիտի մոռանամ: Այս օրը թե ուրախության և թե տրտմության օր էր: Իմ սիրտը, սակայն, էլ ավելի ուրախությամբ էր լցըված: Ուրախ էր, որովհետև երկար աշխատանքից փայփայած փափագից հետո, հասել էի նպատակիս... Մնաք բարովի համար մի քրոջ գրկից մյուսի գիրկն էի նետվում... Սիրելի հորս դըժգույն դեմքը երբեք չեմ մոռանա: Սիրելի մայրս ինձ կրծքին սեղմեց, կարծես այլևս չպիտի տեսներ... Պետք է բաժանվեի: Որքան ժամանակով՝ չգիտեմ: Այդ միայն Աստծուն է հայտնի...»:

Գերմանացի մի օրիորդի հետ 27-օրյա տառապագին ճամփորդությունից հետո հասան Խարբերդ: Այնտեղ Մարիան նշանակվում է մի փոքր հիվանդանոցի կառավարիչ, սկսում դարմանել կարոտյալ ու հիվանդ հազարավոր քրիստոնյաների, մահմեդականների: Հարկ եղած դեպքում նա և՛ բժիշկ էր, և՛ հիվանդապահ, և՛ գթության քույր: Ամեն ինչ նոր էր. կլիման, լեզուն, միջավայրը, սովորությունները: Բայց կարևորը լեզուն էր և խորագիտակ իր առաքելությանը. նա իր առջև խնդիր է դնում հայերեն սովորել: Կարճ ժամանակում հասնում է ցանկալի արդյունքի: Նա ապաստան է տալիս Խարբերդի ու շրջակա քաղաքների, գյուղերի հազարավոր անտեր երեխաների, դարմանում զինվորներին, նյութական միջոցներ հայթայթում մերկ ու սովալլուկ գաղթականների համար, այցելում է հարյուրավոր գյուղեր, զբաղվում վարակիչ հիվանդությունների կանխարգելմամբ: Թուրք բարբարոսները հետևողականորեն շարունակում էին հայաջինջ քաղաքականությունը: Հայերին հազարներով լցնում էին բանտերը, տան-

ջում ու սպանում, հրդեհում տները, թալանում։ Մարիա Յակոբսոնն իր գործընկերների՝ Քարեն Էփփե, Քարեն Փիթըրսոն, Ջեսսի Հորց, օրիորդ Բլեք, տիկին Վիլհելմին Կրունհակն, և հայ բժիշկների հետ գերմարդկային ճիգերով, աննախադեպ աղետի ամբողջ ժամանակաշրջանում բաժանեցին ճակատագրի դաժանությունը, հայի մղձավանջի ու ցեղասպանության դժոխքի բոլոր դռներից անցնելով որպես անվեհեր ու անձնվեր հերոսներ։

«Մեր սրտերը ցավում են, երբ հայերին առանց պատճառի բանտ են տանում։ Ես բառեր չեմ գտնում նկարագրելու համար այս ժողովրդի ցավերը, տառապանքները ու սարսափները... Ամեն օր մեկը մյուսից սոսկալի դեպքեր են պատահում։ Դեռ մարդ ասված արարածը նման գեշ արարքներ երբեք չի անցկացրել իր մտքով։ ... Երբեք չեմ մտածել, թե վկան պիտի լինեմ նման չարչարանքների, արցունքի ու վախի, թշվառության, մի ամբողջ ժողովրդի ջարդի... ամենասարսափելի միջոցներով... ճանապարհներին դիակներ, դաշտերում ու լեռներում, ձորերում՝ դիակներ...»։

Եվ ցրտաշունչ երկրից լսվում է Յակոբսոնի ճիչը. «Որքան եմ ուզում օգնել, պաշտպանել նրանց... Բայց ես ոչինչ չունեմ տալու սիրուց բացի... Ես սիրով եկա մինչև այստեղ։ Սիրով՝ հանդեպ այս ժողովուրդը։ Սերն է աշխարհի ամենազորավոր ուժը...»։

Մոլեգնող հիվանդությունների ու սարսափի զոհ են գնում շատ միսիոներներից շատերը, բժիշկները։ Մարիան էլ հիվանդանում է տիֆով, հրաշքով փրկվում։ Ճակատագիրը, մտածում էր նա, իրեն թողեց կենդանի, որպեսզի միշտ իր սիրած ժողովրդին ծառայի։ «Ի՜նչ երկիր, ի՜նչ տեսակ ժողովուրդ և ի՜նչ դժբախտություն... Շատ անգամ թվում է, թե սրտի կաթված կստանանք, երբ խաղաղության ավետիսը առնենք»։

Զարմանալի է, որ հյուպատոսի ընձեռած հնարավորությունից՝ վերադառնալ հայրենիք, չեն ցանկանում օգտվել Մարիան ու իր գործընկերները. նրանց համար ծանր էր բախտի քմահաճույքին թողնել իրենց ապավինած հայերին։

1912 թվականին, մի կարճ ժամանակով Մարիա Յակոբսոնը մեկնում է հայրենիք՝ կազդուրվելու և հանգստանալու։ Բայց ի՞նչ հանգիստ։ Նա շրջագայում է Եվրոպայի քաղաքներում, պատմում հայերի ողբերգության մասին։ Կազմակերպում հանգանակություններ, նորանոր մարդիկ հավաքագրում։ Որոշ ժամանակ անց կրկին նա Խարբերդում է։

9 նոյեմբերի, 1914— «Լսեցինք, որ ռուսները նահանջում են բոլոր սահմանների վրա... Հայերը սարսափի մեջ են... Այդ դժբախտ ժողովրդի հույսը ցամաքել է։ Բոլոր զենքերը հավաքված են, նրանց քշում են աքսոր, ճամփաներին կոտորում... Տները լցված են զինվորներով,



Հայ փոքրիկները Էմմաուսի որբանոց մտնելուց առաջ

նրանք էլ մերկ են ու սոված։— Ահա այս է պատերազմի արդյունքը,— ասում են զինվորները... Մենք հրաբուխի վրա ենք ապրում... Մխիթարանք չկա, և ոչ էլ լույսի նշույլ այս խավարի մեջ... Որքա՜ն ենք կարոտ խաղաղության։ Քաղաքում ամեն օր տասնյակ մարդիկ են մահանում։ Չեն հասցնում թաղել։ Շատերին մենք ենք թաղում... Մանուկները նվաղել են սարսափից։ ....Թույլ չեն տալիս որբանոց բացել»։

29 հուլիսի, 1915— «Գիշերը 100 հայեր

հանեցին Խարբերդից: 16 տարեկան մի տղա՝ վիրավորված գնդակից, փախել էր մեզ մոտ: Նա տեսել էր իր հոր, մոր ու եղբայրների սպանվելը... Շատերին ըստիպում են մահմեդականություն ընդունել, որ չկոտորեն... Երեկոյան Ձմշկածագի դաշտը այրվում էր, ուր գյուղեր կային... Էրզրումի միսիոներներին ձերբակալել են: Մեր կյանքն էլ ապահով չէ...»:

1 սեպտեմբերի, 1915— «Այսօր սուլթանի տարեդարձի օրն է: Հավատում



Մարիա Ցակոբսոնը երկու հայ որբերի հետ

ենք, թե բոլորին ներում կտա: Թուրքերը Վանը և Բիթլիսը հրդեհել են, որ ռուսները գան դատարկ գտնեն... Նոր ջարդ է լինելու: Այցելեցի հիվանդների տները: Հինգ տարեկան մի տղա գտա տներից մեկում: Մայրը մահացել էր անցյալ շաբաթ: Փոքրիկ տղան քրոջ հետ մենակ էր մնացել, քույրը գիշերը կողքին պառկած մեռել էր: Սիրտս կտոր-կտոր եղավ... Գնացի 11 տարեկան հիվանդիս այցի: Մեռել էր: Ուրախ ենք, որ Արցունքի հովտից Տերը նրան տարել էր...

21 փետրվարի, 1916— «Էրզրումը ընկել է: Նորից զինվորագրություն է: Թուրքերը խուճապի մեջ են: Ռուսներից վախենում են: Հայերին ասում են. մեր ջարդըն էլ ձմեռը կլինի: Բայց ձեզ կսպանենք ռուսների գալուց առաջ: Մեզրե գնացած խոջաները պիտի դիմավորեն Էնվեր փաշային: Այցելեց մեր հիվանդանոցն էլ: Քաջալերում էր զինվորներին, որ շուտ ապաքինվեն, գնան վրեժխնդիր լինեն»:

24 մայիսի, 1916— «Մաքուր, խելացի ու զարգացած հայ ժողովրդի փոխարեն հիմա եկել են տգետ ու ամբողջովին անկիրթ ժողովուրդներ... Այսօր շատ երեխաներ բերեցին: Հյուծված են ու չարչարված: Արդյոք Դանիայում կհավատա՞ն, թե ինչ զգացի բոլորովին մերկ մի աղջնակի տեսնելով... Արցունքներս չկարողացա զսպել: Որքան կուզեի պահել նրան, հոգ տանել, սիրել: Եթե կարողանայի այս բոլոր փոքրիկներին ներս առնել, հեռացնել չար միջավայրից, շրջապատել գուրգուրանքով, երջանիկ պիտի զգայի... Մեծ հարց է երեխաներին կերակրելը: Մեր սնունդը գրեթե վերջացել է: Ամեն ինչ սարսափելի թանկացել է: Թուրքերը չեն հանդուրժում, որ օգնում ենք հայերին... Առաջին անգամ ռուս գերիներ տեսանք: Շատ էին, խղճալի տեսք ունեին...»:

7 հունվարի, 1917— «Աղքատությունը շատ է այս տարի: Աղջիկս՝ սիրելի Պեսսին, 18 փոքրիկի հրավիրեց ծննդյան ծառի շուրջը: Ուրախացանք: Այս տարի 5000 հայ ենք կերակրում ու հագցնում... Դանիացի մեր մայրերը ի՞նչ պիտի ասեին, եթե տեսնեին այս փոքրիկներին, որոնք մեր դռների առջև լալով ու դողալով սպասում են գոնե մի կտոր հաց ստանալու... Եթե օգնություն չըհասնի, շատերը կմահանան... Պստիկ տղա բերեցին՝ վեց տարեկան: Ոտքերը ցրտահարվել էին: Խե՜ղճ տղա, որքան սիտի չարչարվի...»:

25 փետրվարի, 1917— «Կառավարությունը պահանջում է հանձնել աղջիկների շենքը: Ո՞ւր թողնենք 60 օրիորդ աղջիկների, որ ուսում են ստացել, կիրթ են ու բարեպաշտ: Նրանց քոլեջը շատ անգամ մենք գործածել ենք որպես թաքստոց վտանգվածներին... Հայասեր օրիորդ Քեմպելը մի դերվիշից դժվարությամբ մի կացին գնեց՝ որպես տխուր հիշատակ: Դերվիշը պարծենում էր, որ երբ Անդրանիկի հաղթական մուտքից

սարսափահար փախել են թուրքերը, ինքը դրանով 233 հայ է սպանել: Թուրք սպաները համբուրում էին նրա ձեռքերը, նվեր տալիս... Ամերիկացի միսիոներները մեկնեցին: Մայրերը ինձ աղաչում են, որ վերցնեմ իրենց զավակներին, հնարավորություն չկա...»:

26 հունիսի, 1919— «Լսեցինք, որ հաշտություն է կնքված: Փառք Տիրոջը, որ այս օրը տեսանք: Շատ զբաղված եմ հոգսերով»:

30 հուլիսի, 1919— «Որոշվեց, որ Դանիա մեկնելուց առաջ այցելեմ մի քանի գյուղերի որբանոցները: Գնացի Սորսորի վանքը: Այնտեղ 120 որբ ունենք: Սիրտս ուրախացավ, որ որբերին առողջ գտա: Գիշերեցի այնտեղ...»:

Յակոբսոնի օրագրությունն այստեղ ընդհատվում է: Ըստ գրքի հրատարակիչների տեղեկության՝ Խարբերդի միսիոներական և Արևելքի ընկերակցության գործունեության մասին շարունակել է գրել բժշկուհի Փարմելին, երբ Մարիա Յակոբսոնը ուժահատ ու հոգնած մեկնել է Դանիա: Սակայն տեղ չհասած, հրավիրվում է Ամերիկա, այցելում քաղաքներն ու շեները, պատմում վերապրած հայերի ու որբերի մասին, ձեռք մեկնելու կոչ ուղղում բարի մարդկանց: Նրա ելույթները բարերար ազդեցություն են ունենում:

1921—22 թթ. Յակոբսոնը, օր. Փիթըրսոնը և ուրիշներ կրկին բռնում են Խարբերդի ճամփան, բայց թուրք կառավարողներն արգելում են նրանց մուտքը Թուրքիա: Մեծ դժվարությամբ, Միջերկրական ծովի վրայով նրանք իրենց զավակներին տեղափոխում են Բեյրութ, Սայտա, հիմնում նոր որբանոցներ, ապաստան տալիս փրկված հայ մանուկներին: 1928 թ. Յակոբսոնը փոքրիկներին տեղափոխում է մոտիկ Ջիբեյլի քաղաքը: Նրա որբանոցին տրվում է «Թռչնոց բույն» խոսուն անունը: Փոքրիկները քիչ-քիչ վերագտնում են իրենց: Մեծ Մայրիկի՝ Մամա Յակոբսոնի ջանքերի շնորհիվ մանուկների այդ տունը վերածվեց կրթության ու դաստիարակության հզոր օջախի, ուր գիր ու արհեստ էին սովորում հազարավոր երեխաներ՝ շրջապատված մայրական հոգատարությամբ ու սիրով: Նա խորապես սիրում էր իր զավակներին, նրանց հետ հայերեն խոսում, պատվիրելով միշտ հիշել, որ իրենք հայ են, զավակները ազնիվ ու աշխատավոր մի ժողովրդի, որ զոհ դարձավ բռնակալությանը: «Թռչնոց բույնի» սաները կյանք էին տանում մասնագիտական գիտելիքներ, լեզուների, երգ-երաժշտության իմացություն, երախտագիտորեն հիշելով այդ մեծ գերդաստանի դաստիարակներին, հիվանդապահներին և, իհարկե, Մամային: Խղճի մարմնացյալ այդ անխոնջ կինը շուրջ 60 տարի իր ամբողջ կյանքը բոլորանվեր ծառայեցրեց մարդասիրական իր վսեմ կոչմանը, մանուկների խնամքին ու դաստիարակությանը, իր թևերը փռեց հիվանդ ու վիրավոր, մերկ ու սովյալ մանուկների վրա, սատարեց ու մխիթարեց նրանց:

Շատերն են այցելել «Թռչնոց բույն», հիացել անձնակազմի մեծ աշխատանքով, բարեշեն շրջակայքով, երեխաների շենք ու շնորհքով: Մաման նույնիսկ իր թոշակն էր ծախսում մինչև վերջ՝ երեխաների համար միրգ ու խաղալիք գնելով: Եվ վերջին կոպեկները դնում էր նրանց թաթիկների մեջ, որ մոտիկ ծերանոցներն այցելելիս գցեն հանգանակության տուփերը, սովորեն բարություն անել: Նա կիսում էր երեխաների թե՛ անձնական ուրախությունը, թե՛ հոգու նվիրական գաղտնիքները, հոգում անգամ նրանց ամուսնության մասին: Եվ աշխարհի տարբեր ծայրերից գալիս էին նրա սաների ու սանուհիների ձեռքը խնդրելու, շենացնելու իրենց օջախները:

Արդյունաշատ ու հոգնաբեկ իր կյանքի վերջին օրերին նա ցանկություն է հայտնել թաղվել «Թռչնոց բույնի» բակում: Նրա այդ միակ և արդար կամքը կատարվում է: 1960 թ. ապրիլի 6-ին հավիտյան հանգիստ է առնում նրա հոգին: Նրա աճյունն ամփոփվում է որբանոցի տարածքում. որպեսզի միշտ իր զավակների հետ լինի, որպեսզի նրա պայծառ անունը լսելիս փափկեն ու մայրանան չար սրտերը...

... Մարիա Յակոբսոնի գործը նույն նվիրումով շարունակում է նրա քույրը՝ Աննան, չշեղվելով այդ մեծ տան բարի ավանդույթներից՝ նույնպես հայերենին տիրապետած, ազնվազարմ ու ջերմ սրտով:

Իրարից մի քանի տարիների տարբերությամբ բոլորում են Մարիա Յակոբսոնի ծննդյան 100, մահվան 30 և «Թռչնոց բույնի» 60-ամյակները: Թող այս համեստ խոսքը արժանին մատուցի մեծ մարդասերի խնկելի հիշատակին:

ՓԱՌԱՆՁԵՄ ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՄԻՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Գյուղանկար

Երեկոն աճեց կապույտ ճյուղերով։
Հո՛յ, թռչունները պտուղներ են կախ։
Մանուկներն անցան լուսապսակով։—
Ինչ մերկ են... վախից փուշն է փայլում պաղ։

Փոքրիկ հովիվը գնում է։ Բայց ո՞ւր...
Մայրն աղ է ցանում՝ կարկուտը անցնի։
Ծների հաչը-աքլորի փետուր,
Խրվում է փափուկ մաշկի մեջ լուսնի։

Հնձվորի սիրտն է նախշերից սափոր։
Սև ցուլի նման մութըն է պառկում։
Հե՛յ, սարի քամի-կարմիր ձիավոր,
Աղջիկը քեզ այդ ո՞ւր է ուղարկում...

# Դաշտ

Եվ մի քիչ ներքև ապրում էր Փուշը,
Որն արնոտում էր սիրտն առավոտի։
Ի՞նչ էր աղերսում իմ ներսում լույսը։
Եղինջն էր բուժում ցավերը խոտի։

Լիածաղիկը նավարկում էր վեր—
Բերանը բոց էր, մարմինը՝ հակինթ։
Դաշտ, ո՞վ էր հնձում արտասուքներդ։
Ով էր համբուրում շեմն հիշատակիդ։

Հազարան հավքի փետուրն ո՞վ գտավ։—
Ապրո՞ւմ էի Վարդի կարմիր թերթի մեջ։
Ինչ մնաց՝ Ջուր է, Կրակ է ու Կավ։—
Ոչ սկիզբ է, ոչ վախճան է ու վերջ։

# Լուսին

Լուսին-գնչու ոսկեատամ։
Խածիր խնձորը գիշերվա։
Ինչո՞ւ եկա։ Ինչո՞ւ գնամ՝
Գաղտնիքիդ աղն հոգուս վրա։

Ո՞վ կա այստեղ։ Ես էլ ես չեմ։
Եվ մատներիս ծուխն է դեղին։
Նայիր վրաս... Տես հագել եմ
Արծաթ ձայնը ջրհեղեղի։

Տես աչքերս տաք բներն են
Նույան ճերմակ զույգ աղավնու։
Մեկ օրով եմ այստեղ եկել...
Ախ, պսակվիր ինձ հետ, գնչու։

Քեզնից ոչինչ չեմ վերցրել,
Չեմ հասցրել սիրել և ես,—
Լուսին, լուսին, ախ, ինչ անեմ,
Զրույց անենք գոնե... այսպես...

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Մեր շրջապատում, տներում՝ հին իրերի մեջ, անհատ անձանց մոտ հաճախ տեսնում ենք բացիկներ, որոնք պատկերում են պատմական տարբեր իրադարձություններ: Մեր ձեռքին են Կարս քաղաքին վերաբերող մի քանի բացիկներ, որոնք մեզ տեղափոխում են դարասկիզբ, հաղորդակցում այն անսովոր լարվածությանը, որ տիրում էր իր նշանակությամբ կարևորագույն հայկական այս քաղաքում, երբեմնի Բագրատունյաց կենտրոնական, ապա՝ Վանանդի հայտնի թագավորության մայրաքաղաքում, երբ դեռ իր անմատչելի ամրոցի անունով այն կոչվում էր «Կարուց բերդ»: Ողջ Ռուսաստանում փոթորկվող հեղափոխական ալիքը սըրընթաց մտել էր նաև Կարս, իր մեջ ներառել ամրոցի կայազորը: Մարտի 6-ին զինվորները փողոց դուրս ելան «Կեցցե հեղափոխությունը», «Կորչի ցարը» և այլ լոզունգներով: Կայազորային խորհրդի նիստի որոշմամբ ամրոցի պարետը և շտաբի պետը ձերբակալվեցին, առաջարկվեցին նոր թեկնածություններ՝ ապըստամբած զինվորների ու սպաների պահանջով: Համարյա բոլոր մարտկոցները պատրաստ էին վճռական գործողությունների, սակայն թույլ կազմակերպվածությունն ու անվճռականությունը ամրոցի ներսում հեղափոխականորեն տրամադրված ուժերին միավորելու հնարավորություն չտվեց:

Կարսի ամրոցը... Միջնաբերդը... Հիշո՞ւմ եք Չարենցի «Երկիր Նաիրի» վեպը. Կարսում ծնված ու մեծացած մեծ բանաստեղծի նկարագրությունը հաստատում են քաղաքը պատկերող համարյա բոլոր բացիկ-լուսանկարները, ուր միջնաբերդ-ամրոցը ներկայանում է որպես մի ամրակուռ շինություն՝ աշտարակավոր բարձր պատերով ու բազմաշերտ կառույցներով, թշնամուց պաշտպանվելու հուսալի հարմարություններով: Երեք կողմից գահավեժ զառիթափերով, ուղղաբերձ քերծերով, բնական անփոխարինելի պատնեշ ունեցող ժայռազանգվածը, սկզբում հիմնադրվելով որպես ամրոց, շուտով հայտնի դարձավ որպես անառիկ բերդ: Իսկ երբ ամրոցի շուրջը կառուցվեց պաշտպանական պատ, որն իջնելով վիթխարի ժայռի կատարից հատեց Կարսագետը, իր մեջ ամփոփեց նաև քաղաքի հարթավայրային զգալի մասը, մեծապես ապահովելով քաղաքի, նաև նրա բնակչության անվտանգությունը: 1,7 հեկտար ամրոցային տարածքը, ուր տեղավորված էին բազմաթիվ զինապահեստներ ու սննդի ամբարներ, կայազորային զորանոցներ, շտաբն ու հոսպիտալը, քաղաքին միանում էր երկու հիմնական մուտքով՝ Միջին և Բերդի դռներով, իսկ խմելու ջրի հարցը օրհասական իրադրություններում լուծվում էր մինչև Կարսագետ իջնող ստորգետնյա ջրուղով: Ինչեր ասես, որ չի տեսել հինավուրց այս քաղաքը բարբարոսական ներխուժումներից: Դեռ 1053 թ. Արիստակես Լաստիվերցու վկայությամբ՝ «անօրենները» հանկարծակի խուժեցին Կարս ու անխնա կոտորեցին համարյա բոլորին: Փրկվեցին միայն միջնաբերդում թաքնվածները: Եկան մյուս նվաճողները՝ Տուղրիլն ու Ալփ-Արսլանը, Լենկ Թեմուրն ու Շահ Աբասը, Նադիր Շահն ու շատ թուրք սուլթաններ: Ամեն թալան ու ավերից հետո քաղաքը նորից էր ոտքի կանգնում, կառուցապատվում էին փլված պարիսպները, աշխուժանում էր կյանքը: Գտնվելով Պարսկաստան տանող առևտրական ճանապարհին և ռազմական տեսակետից հանդիսանալով հզոր ստրատեգիական ամրակետ, Կարս քաղաքը 19-րդ դարի սկզբներից, գրավեց նաև ցարական Ռուսաստանի ուշադրությունը: Կարճ ժամանակում ռուսական զորքերը մի քանի անգամ Կարսից դուրս վռնդեցին թուրքերին, սակայն երկար չկարողացան այն պահել: Առավել բախտորոշ էր քաղաքի բնակչության համար 1877 թ. նոյեմբերի 6-ը, երբ շեշտակի գրոհով ռուսական բանակը հայ կամավորական ջոկատների հետ երրորդ անգամ մտավ Կարս: Հաջողության գրավականը մանրազնին ու հմտորեն մշակված հարձակման պլանն էր, որին ակտիվորեն մասնակցեցին հայազգի գեներալներ Հովհ. Լազարևը, Հ. Ալխազովը, Քիշմիշևը, իշխան Մելիքովը և ուրիշներ: Ռուսական տիրապետությունը լայն հնարավորություններ բացեց բնակչության տնտեսական, քաղաքական ու մշակութային զարգացման համար: Գլխավորն, իհարկե, միջնաբերդ-ամրոցն էր, որի շուտափույթ վերականգնումը ապահով կյանքի կարևոր երաշխիքն էր: Քիչ անց, ամրաշինական կա-

ռույցների վերանորոգում-ապաքինումներից հետո այն վերածվեց կատարյալ և հուսալի պաշտպանական համակարգի, որպիսին նա մեզ է ներկայանում դարասկզբի հրատարակության լուսանկարային բացիկների միջոցով:

Լուսանկարներում, ամրոցից ներքև, արդեն հարթացող տեղանքում, Կարսագետի ձախ ափին, շրջապատի հետ ներդաշնակորեն բազմած, երևում է հայոց Աբաս թագավորի օրոք կերտված մեր ճարտարապետության գոհարներից մեկը՝ Առաքելոց եկեղեցին, որը Ե. Չարենցի հավաստմամբ «ամենամեծ ու ամենանվիրական հրաշալիքն է, զարդն է, զարմանքն է այդ հնամյա քաղաքի»: Եկեղեցուց ու միջնաբերդից հետո, բնաստեղծի երրորդ հրաշալիքը Վարդան Մամիկոնյանի կամուրջն է՝ քարաշար, եռաթռիչք, ժամանակի համար վիթխարի մի կառույց, որը նույնպես բազմիցս արտապատկերվել է բացիկներում: Բացիկները լռելյայն հաստատում են, որ դարասկզբին արդեն քաղաքում քիչ չէին բնակելի բարեշեն տներն ու հասարակական օգտագործման շինությունները՝ կինոթատրոններ ու ակումբ, բաղնիքներ ու խանութներ, գրադարաններ, արական ու իգական ուսումնարաններ, դպրոցներ, տպարաններ, բանկեր և այլն: Այլ քաղաքների համեմատությամբ՝ զգալիորեն բարվոք ու ավարտուն տեսք ունեին կենտրոնական փողոցները: Կենցաղսպասարկման արժեքավոր աշխատանքներ էին կատարում Մ. և Ա. Սողոմոնյան եղբայրների մեխանիկական արհեստանոցը, Կ. Դրամփյանի, Ա. Պապանովի և այլոց ալրաղացները, գործում էին կոնյակի ու գարեջրի, գինու, աղյուսի, կրի ու օճառաարտադրման գործարաններ, տեսքի էին բերվել ու կանաչապատվել զբոսայգիները: 1899 թ. հունիսից կանոնավոր չվացուցակով գործում էր Կարս—Թիֆլիս երկաթուղին: Մի խոսքով, եռում էր կյանքը հայոց հնագույն Կարս քաղաքում, վերելք էին ապրում քաղաքաշինությունն ու մշակույթը, առևտուրն ու արհեստագործությունը, և դժվար էր նախապես գուշակել ճակատագրի հերթական խաղը, երբ 1918, այնուհետև 1921 թվականներին նոր, արյունալի ներխուժումով թուրքերը վերստին հաստատվեցին Կարսում...

**ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ**
**ԻԳՈՐ ԶԱՔԱՐՅԱՆ**

Ամայի, խորունկ անտառին մեջեն, օձագալար ուղիներե, հապճեպ քայլերով կքալեր մարդ մը՝ ցեցքված անճանաչելի դեմքով:

Երկինքը մթամած, շատ ցած իջած կհևար կարծես: Կծու քամին ոլործուն պտույտներ կկատարեր մարդահասակ եղեգներուն ընդմեջեն:

Խռպան բնության հավանական վըտանգներուն գիտակցությունը չէր խռովեր զինք: Համառորեն աներկյուղան կքալեր արագ-արագ:

Արձագանքող իր հաստատ ոտքերուն ձայնը կխեղդվեր ճամփու երկայնքին ծըվարած գորտերու կրկռունքներով: Գաճաճ մացառները երբեմն կը խածոտեին զինք, բայց փշալից խղճահարությունը, որ կկճեր իր հոգին, շատ ավելի դառն էր:

Հանկարծ հեռուն խոր մթության մեջ առկայծ լույս մը կդողդողա: Այրող կարոտը իր լայնանիստ կուրծքին անպատում խռովքով մը դուրս կպոռթկա: Մայրի՜կս:

Հոն, հեռուն, աղյուսե շինված համեստ տնակին մեջ, ուր հյուսած էր մանկության անմեղ երազները, պատանեկան խռովալից հույզերը, փրփրահեղձ տենչերը: Հոն, այդ տնակին մեկ անկյունը կծկված, սպառիչ մշտնջենավոր սպասումով մը ծերուկ մայրը կսպասեր զինք:

Գլխարկը կիջեցնե մինչև աչքերը ու կարագացնե քայլերը, լեցված խանդով, գուրգուրանքով և անձկությամբ:

Երբ կհասնի գյուղ, ուշ գիշեր է արդեն: Թաղին դատարկապորտ տղաքը միայն դուրսն են: Մտերմորեն քով-քովի շարված, բոբիկ ու գռուզ մազերով, աննպատակ ու անգիտակից:

Սրճագույն գլխարկով անծանոթ մարդը խորահայաց ուժեղ նայվածք մը կը նետե տղոց վրա, ու սիրտը կճմլվի: Տըղաքը կքրքջան ու կծաղրեն իր գլխարկը: Մարդը ետին կդառնա լուռ ու զայրալից: Տղաքը սահմռկած իրար կհրմըշտկեն:

Փողոցային կենցաղի նվաստության մեջ փողոցային կիրքն է, որ մեզ աղբախառն տիղմին մեջ կգլորե ու մեզ ախտավոր զզվելի կենդանիներու աստիճանին կը հասցնե, կորուտա ան զուսպ. «Գիշերվա ուշ ժամուն ինչո՞ւ ձեր տուները չեք, մայր չունի՞ք: Ես ալ ձեր տարիքին




ձեզ նման ապրեցա գրկանքի մեջ, գըլխաբաց ու ոտաբոբիկ, անսանձ ու անպատակ: Երբեք ինձմե մեծերուն տված խրատը չէի ընդուներ, կքրքջայի ինքնավստահ ու ինքնաբավ էի... Ամեն բան գիտեմ կկարծեի:

Հաճելի, հարուստ ու դյուրին կյանքի մը կանսայի, բայց այդ կյանքին տիրանալու համար աշխատանքի մասին երբեք չէի մտածեր: Անհիմն ըմբոստություն մը կար մեջս ինձմե լավերուն հանդեպ, ապուշ նախանձ մը, որ հիմնահատակ կործանեց էությունս:

«Դուն գիս չես հասկնար, դուն գիս չես հասկնար»,—կպոռայի անդադար խեղճ մորս երեսին, ան ապշահար ու լեղապատառ կնայեր ինծի: Անհասկանալի առեղծվածը ես ինքս էի»:

— Եպրաքսի մայրիկին տղան է,— շշնջաց տղոցմե մեկը,— Եպրաքսի մայրիկին գող տղան...

— Այո,— սաստեց սրճագույն գլխարկով անծանոթ մարդը,— Եպրաքսի մայրիկին գող տղան եմ ես: Չորս տարի բանտի քստմնելի զարհուրանքի մեջ, ոժնետեսիլ այդ ուրվակերպ մարդկային խլյակներու կողքին, զզջումի հեղձուցիչ զառանցանքներով տանջվեցա, կործանարար հասարակությունե փրկվելու համար խոկացի երկար-երկար, թեև խորապես ընկճված սա եզրակացության հանգեցա: Հանգիստ կյանք մը ապրելու համար պետք է աշխատել այսօր, վաղը և միշտ: Աշխատանքը չար ունակությունները կխափանե մեր մեջ, աշխատանքը կազնվացնե մեզ, ու նախանձը ինքնին կխեղդվի:

— Սիրելի տղաք,— փլավ անծանոթ մարդուն ձայնը,— եթե մայր ունիք, գացեք ձեր մոր մոտ, եթե չունիք, իմ մորս եկեք ինծի հետ:

Տղաքը զարմանահար հրացայտ աչքերով դիտեցին օտարականը, միամտորեն զգացված, տարամտորեն գոհունակ, բաժնվեցան իրարմե ու սուլելով ամեն մեկը բռնեց իր տան ճամփան... Սրճագույն գլխարկով մարդուն տափակ ու սուր պայտոսկրերուն վրայեն արցունքը հոսեցավ տաք ու առատ:

— Ես որբ եմ, մայր չունիմ,— ըսավ տհաս ձայն մը, անծանոթ մարդուն կողքին:

Մարդը ցնցվեցավ, ծռեցավ, համբուրեց տղեկին ճակատը ու անոր սառած ձեռքը իր ափին մեջ առնելով, առաջնորդեց դեպի հին տնակը, դեպի մայրական գիրկը, զոր ինքը այնքան անտեսած էր, դեպի սիրո բույնը, դեպի լավը...

Ալբեր Սամեն
Ֆրանսիացի բանաստեղծ (1858~1900)

# Աղավնիները

Չորսդին ծովը համասփյուռ մերկ հորիզոնն է գրկել,
Հորիզոնը դառնաղետ, ուր ծեր տապանն է լողում,
Եվ կորացած կայմի մոտ ցնցվում է հույսը բեղուն՝
Թմրած ձեռքերն իր խաչած սրտի վրա ապակե:

Այս էլ քանի-քանի դար տարիներն են լուռ հնում,
Հոգին՝ անշարժ մի նավորդ՝ դեռ հենված է հեսանին,
Եվ նայում է խելագար խավարի մեջ վշտալի,
Թե ինչպես են դեպ անհայտն աղավնիները թռնում:

Նրանք գնում են այնտեղ՝ փետուրները շաղ տալով
Խենթ քամու մեջ, որ նրանց ձաղկում է մեղմ փրփուրով,
Գերված ճախրով վեհանիստ՝ թռնում են խոլ ու հարբած:

Եվ ամենայն հաջորդ օր՝ մշուշոտ ու մահախինդ,
Ճերմակ դիերը նրանց երևում են տապանին,
Ծովի վրա ծաղրադեմ՝ զույգ թևերով տարածված:

# Վեհ սեր

Անորոշն եմ սիրում ու գույները փխրուն,
Ամենն, ինչ ցնցվում է ու պսպղում չորսդին.
Վարս ու աչքեր, մետաքս, տերև ու ջուր, ոսկի,
Ոգեղեն ու անգո ձևերի փայլը նուրբ:

Եվ հանգչողը փախչող տատրակների նման,
Երազների շղթան՝ ծխի մեջ հանգուցվող,
Մթնշաղի մեջ պաղ կիսադեմը սուզվող,
Անբնական ու նուրբ քնքշանքները նրա:

Երկնից ժամերգություն՝ հպվող շուրթերի մեջ,
Հոգին՝ կքած որպես լծի տակ նրբենի,
Հոգին, որ մեռնում է թոշնած մի վարդի պես,

Եվ այն սիրտը անքեն խորհուրդներով բերրի,
Ուր հսկում է արթուն, ինչպես մի լույս կամար՝
Գիշեր ու տիվ՝ մի սեր մենավոր ու անպարտ:

# Իմ մանկությունը գերի...

Իմ մանկությունը գերի անցել է ժեռ քարափում,
Քաղաքում, ուր անդադար, ածխափոշու մեջ թաղված
Գործարանը հրաշունչ մարդկանց խեղդում էր անդարձ.
Պարտեզների կարոտից աչքերս էի լոկ փակում...

Հասակ առա ես լույսի, Արևելքի տենչերում.
Երթալ եզերքը ծաղկոտ, ուր անգամ տապն է բարիք,
Քաղաքներում ոսկեղուռ՝ ես մի պարոն թափառիկ,
Նրա կանաչ մայթերին՝ պատրաստ սուսեր ճոճելու:

Հետո ես եմ վարժվեցի պատրանքներից անմարմին,
Հիմա տրվել եմ հոգով կանչող երգին Հյուսիսի,
Հետզհետե ավելի կրքոտ սիրում եմ քո հին

Կերպարանքը սրբունու, Ֆլանդրիա, ով սուրբ հող,
Քո մարդկանց խիստ ու արդար՝ կռիվներից խուսափող,
Քո մեղմությունը թշվառ, վշտալի ու սիրտ մաշող,

Քո ճահճուտները, կանաչ դաշտերը քո վուշատու,
Հողմաղացներդ՝ կախված խոր երկնքիդ կապույտում,
Եվ որբերի մոտ նստած՝ սևեր հագած այն այրուն...

# Վերադարձ

Հանդարտեցրու, թիավար, ընթացքը քո օրերի,
Եվ աչքերդ փակելով՝ թիակները դիր մի կողմ...
Պարտեզներից երբեմնի ելնող քամին անողորմ
Կորացնում է կույս եկած հոգիները անթերի:

Փնտրիր հոգում քո՝ հեռու ճամփաներից կրածածկ,
Մացառուտ մի կանաչած, ուր խաչերն են կանգնած լուռ,
Վերադարձող ձայների երգը լսիր դու տխուր:
Եվ գուրգուրիր քո սրտի փոքրիկ ցավերը հանգած:

Տենչա հայացքը գերիչ՝ օրերի մեջ ծավալվող:
Եվ թող պահերն այն, որոնց կդիպչի հնքը սիրո,
Մեղմանվագ խմբերգեն ուղեկցությամբ ջութակի:

Ամենատես գիշերի կոկ ու ողորկ գաղտնարան՝
Հղկիր հուշերդ անձև քարերի մեջ թանկագին,
Եվ հնատիպ զարդերով պճնիր մատներդ բարակ:

# Երաժշտություն

Չկա, չկա ոչ մի բառ այս երեկո ի զորու
Զսպելու իմ լռության կարոտ հոգին տխրամած,
Ջութակն իզուր է անվերջ երգում մենակ ու հարբած՝
Երազն իմ նուրբ ու խաղաղ անզոր ի ցույց դնելու:

Ո՛վ զնգոց հիշողության բյուրեղափայլ արբունքի,
Երաժշտություն, դու ես լոկ հագեցնում ինձ ու գթում,
Եվ իմ հոգին բնազդով քո խորհուրդին է տրվում,
Ինչպես շրթունքն է մեղմիվ միանում այլ շրթունքի:

Ոսկե արցունք... Օ՛, ահա, հմայքը աստվածային...
Մեղմիկ քամին է հպվում ընդարմացած մեր մաշկին,
Եվ ձեռքերն հրեշտակի մեր հոգիներն են տնտղում:

Ներդաշնություն, դու ես, դու, Կույսը մեզ հար օգնական,
Որ, ինչպես մի խեղճ մանկիկ, միշտ իր սրտին է սեղմում
Մեր սիրտը հար երազկոտ, մեր սիրտը թշվառական:

ԱՂՎԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

## Հայոց աշխարհիկ

Հայոց աշխարհիկ, քո աչքերի մեջ
Արարատ լեռան գիծն է լուսավոր,
Եվ քո վերևում խաչավառվում է
Սուրբ Մեսրոպ Մաշտոց աստղը գիսավոր:

Մեր մեջ ծննդյան առաջին օրից
Զարմանահրաշ խոսքեր են աճում՝
«Քանի՛ գըլխանի մարդիկ եք կամ՝ ո՞վ,
Ծասունցի Դավթին որ չեք ճանաչում»:

Եվ արևելքից գնում արևմուտք,
Եվ սփռվում ենք հյուսիս ու հարավ՝
Չկորցընելով գաղտնիքը սերմիդ,
Հավետ մնալով պատկերիդ ծարավ:

Խորքերից մեզ հետ եռաբանելով՝
Ջայնում է ահա պատմիչ ծերունին՝
Սասունցի Դավիթ լուսեղեն տղան
Մեզ կպահպանի այլասերումից:

Մեզ կպահպանի, բաժին կտա մեզ
Մի բուռ ցորենից իր համբերության,
Մենք շռայլ ձեռքով դրանք կցանենք
Սահմանների մեջ քո տեսողության:

Ու մինչ չդառնա ցորենը մասուր,
Լույս չճառագի ապառաժ քարից,
Մենք քո առջև ենք ծնկաչոք ու ձույլ,
Քո զինվորներն ենք, Հայոց աշխարհիկ:



ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

## Լույս, լույս, զվարթ...

«Ժամանակի ակունքներից ես գալիս, դու իմ հայ լեզու, դարերի լեռնապարերի վրայով: Հայկյան նետի սույլն ու շառաչը կա քո մեջ, Ավարայրի վրա կանգնած աղոթք աղաղակի սաստկությունը»... Սիլվա Կապուտիկյանի մայրենի լեզվին նվիրված այս տողերը կարդում եմ Երևանի Հովհ. Հովհաննիսյանի անվան № 52 դպրոցի 2-րդ հարկի միջանցքի ցուցատախտակին:

Հիշում եմ, երբ առաջին անգամ այս երդման նման կարդացի Եղիշե Չարենցի «Ես իմ անուշ Հայաստանին», ինձ թվաց, թե այդ բոլոր պատկերները իմ ներսում կան, ու թեև աղոտ ու տարտամ՝ իմ պապերի հոգու ու արյան միջով եկել, հասել են ինձ: Եվ բանաստեղծության տողերը հանդիպեցին իմ մեջ եղած պատկերներին՝ ինչպես հարազատը հարազատին: Արթնացրին, կենդանացրին, հաստատեցին ու ընդլայնեցին իմ ըմբռնումները և մայրական հարազատությամբ դարձան հայրենի երկրի, հայոց լեզվի ծաղկուն մի աշխարը: Անդավաճանելի էություն, մայր լեզվի քաղցր խարիսխով, դժվար ճանապարհով, մեր էության ընշանագրերից մեկը, որ ճաշակեցի:

Դպրոցի միջանցքներում լռություն էր, ես սպասում եմ դասավարտի զանգին ու նայում «Մայրենի լեզվի» մյուս ցուցատախտակները. «Դաստիարակության համար ոչ թե երկար ժամանակ է հարկավոր, այլ կարճ ժամանակի խելացի օգտագործում»՝ Ղազարոս Աղայան: Կարդալով մտածում եմ. իսկապես, շատ բաներ կան, որ մեր դպրոցներում ձևական բնույթ են կրում, որ ցուցադրական են, ավելորդ: Պիոներական շատ միջոցա-

ռումներ շինծու են, դրանց կազմակերպիչները հաճախ ստիպում են երեխաներին շախմատի քարերի նման շարժվել, անգիտակից ու ոչ ինքնակողմնորոշվող: Պիոներական կազմակերպությունը շատ դպրոցներում երեխաների արվեստի, գրականության, լեզվի, հայ երգի, ճարտարապետական մշակույթի, գրականության, երաժշտության և ազգային ավանդների հոգևոր անհատականացման այլ մղելիքներին պատշաճ մակարդակով չի աջակցում: Ճիշտ է՝ կան պիոներական երթուղիների համապատասխան անվանումներ, բայց, ցավոք, մակերեսային են իրենց գործունեության մեջ:

Բավարար բարձր մակարդակի վրա չէ նաև աշակերտների առաջադիմությունը: Պատահում է՝ ուսուցչին սիրելուց ենք այս կամ այն առարկայի նկատմամբ համակրություն կամ հակակրություն ձեռք բերում: Առողջ տրամաբանություն ու աշակերտների նկատմամբ սեր չունեցող ուսուցչի առարկան, թեկուզ սիրելի էլ լինի՝ երբեմն դժկամությամբ ենք սովորում: Այսօր, հրապարակայնության պայմաններում հնարավորություն ունենք ասելու, ինչու չէ, նաև երեխաների հետ կիսվելու՝ այն հարցերի մասին, որ տարիներով, գործուղումներից հետո, մենք՝ լրագրողներս, ներքուստ դժգոհելով, խոսել ենք իրար հետ, սակայն չգիտես ինչու, «աչքակապուկ» խաղի նման վարդագույնով ենք ներկայացրել այնպիսի հարցեր, որոնք միայն առաջին հայացքից են ոգևորում, թվում «գեղեցիկ»,



բայց կեղևի տակ դատարկ են՝ կյանքի ավիշը չի հոսում: Մի անգամ ուրախ-ուրախ պատմում էի անվանի լրագրող Մարգո Ղուկասյանին, թե Հրազդանի պիոներները այնքան հազար գիրք են ուղարկել այստեղ ու այնտեղ: Գիրք նվիրելը լավ բան է և գովելի, սակայն, ցավոք, պարտադիր միջոցառման պահանջով, երեխան տան իր միակ գրքի օրինակն էլ է ուղարկում... ինքն իսկ չըկարդալով: Բայց չէ՞ որ պարտադրանքի ձեռնափայտը սիրո գրավականը չէ:

... Զանգը դեռ չէր տվել: Ես մոտենում եմ հաջորդ ցուցատախտակին, որ վերնագրված է «ԳՈՐԾՆԱԿԱՆ ԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ», ու անմիջապես հիշում, որ նման գրությունները հաճախ հակիրճ ու հասկանալի չեն գրվում: Այստեղ կան նամակների, դիմումի, ինքնակենսագրության, հայտարարության, տեղեկանքի և այլ գործնական գրագրությունների ճիշտ օգտագործման ձևերը: Ուրախալի է, սակայն նախընտրելի է նամակների ավելի բովանդակալից օրինակներ, որ բացի ձևից, խոսեն և օգտակար դառնան աշակերտին: Դասամիջոց է. մտնում եմ հայոց լեզվի և գրականության դասասենյակը: Պատերի ցուցատախտակներին հայ և օտարազգի գրողների ու նշանավոր մարդկանց խոսքերից առնված քաղվածքներ են՝ կրկին մեր մայրենի լեզվի մասին: Ցուցատախտակների վերևում իմաստավորված վերնագիր կա. «ԻՄԱՍՏՈՒՆ, ՇՔԵՂ, ԱՐԵՎԱՀԱՄ, ԳՈՒՆԱԳԵՂ, ԱՌՆԱԿԱՆ, ՈՍԿԵՂԵՆԻԿ»: Եվ քաղվածքները արված են նրբությամբ ու իմաստավոր զգուշությամբ: Ասացվածքներ էլ կան, որ գրի եմ առնում հուշելու համար այլ դպրոցների, որպեսզի այնտեղ էլ օգտագործեն: Որովհետև ասացվածքները ժողովուրդը երկնել է բազմաթիվ փորձությունների մեջ, որոնք և ուսուցանող են, և իմաստուն:

1— Սխալված աշակերտի վրա մի բարկանա, որովհետև հիվանդն իր կամքով չի հիվանդանում:

2— Գոհունակությամբ աշխատելը առանց պսակի չի մնա:

3— Մարմինդ նեղիր գիտությամբ և գրքի վկայությամբ:

4— Ոչ ոքի մի տրտմեցնի ու ոչ ոքից մի տրտմիր:

5— Անգործ մեղուն ժրաջան պիծակից լավ է:

6— Մարդիկ ավելի շատ օրինակին են հետևում, քան ճշմարտությանը:

Կարելի է առավել ամուրն ու սիրելիներն ընտրել, որոնք դասամիջոցին անգամ, ուսուցչի պես կարող են զրուցել քեզ հետ:

Միջանցքի և լեզվի դասասենյակի ցուցատախտակները հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Արաքսյա Նալբանդյանի ընտրությամբ ու ձևավորմամբ են արվել՝ տողերի նրբանուրբ ընտրությամբ ու գրողների, ցավոք, ոչ այնքան արտահայտիչ նկարներով: Միջանցքում գեղանկարների ցուցահանդես էլ կա. հեղինակը 8-րդ դասարանցի աշակերտ Աղաբեկյան Գարեգինն է:

Ծուրջս 7-երորդցիներ ու 9-երորդցիներ են հավաքվում, և բոլորն էլ աղջիկներ են: Ինչպես երևում է, այս և շատ տեղերում աղջիկներն են առաջամարտիկները, ու ես տխրում եմ տղաների համար, նըրանց անհատականության ձևավորման պայմանները հարկավոր է նրբորեն ուղորդել՝ խելացի ու հայրենասեր մշակի պես: Այս հարցում՝ առանձնապես կապ պահպանելով հայրերի հետ:

— Աղջիկներ,— հարցնում եմ,— ձեր մտքի մեջ շատերդ թաքուն չե՞ք մտածել, թե դպրոցում այս-այս բաները լինեին...

Ու հետևում են պատասխանները:

— Լավ կլիներ բեմը ավելի ճաշակով ձևավորվեր:

— Տնարարության դասասենյակը կահավորեին՝ լիներ գազօջախ, սառնարան:

— Սպորտդահլիճի հանդերձարանները փոքր են ու նեղ, շորերը խառնվում են իրար, ու մինչև ամեն մեկն իր շորն է գըտնում՝ հաջորդ դասից ուշանում ենք:

— Գրադարա՛նը փոքր է՝ եղած գրքերի օրինակները չեն բավարարում:

Հրաժեշտ տալով, ես դուրս եմ գալիս դպրոցից ու նայելով առաջին հարկի պատուհանների կեղտոտված ապակիներին՝ հեռանում: Աղջիկնե՜ր... Աչքերիս առջև Պարույր Սևակի տողերն են, որ խնամքով նրա սիրելի դիմանկարի հետ դասասենյակի պատին էր փակցրել ընկեր Արաքսյա Նալբանդյանը:

Լույս, լույս զվարթ
Եվ ոչ թե լույս երեկոյի
Ի մտանել արեգական,
Այլ լույս զվարթ արդար գոյի...

— Այլ լույս զվարթ արդար գոյի,մըտքիս մեջ հիշելով մեր դպրոցներում եղած բազմաթիվ փոքր ու մեծ թերությունները՝ կրկնում եմ ես բարձրաձայն...

ՀՄԱՅԱԿ ԲԱԽՏԱՄՅԱՆ

# Արցախ-Ղարաբաղի աղբյուրները



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

## ՄՈՇԵՆՈՒ ԱՂԲՅՈՒՐԸ

Մոշուտի մեծ շամբից է քաղցրալուր խոխոջյունով սկիզբ առնում այս աղբյուրի վճիտ ջուրը: Երբ խմում ես այդ ջրից, մոշի համ ես առնում: Խմողները հաճախ կասկածում են ու նայում մոշուտի կողմը՝ գուցե ինչ-որ մեկը կատակ է անում ու ջրի մեջ մոշի հյութ է քամում, որ մարդ զարմացնի… Չէ, այդպես չէ: Մոտակայքում մարդ չկա, և քիչ անց համոզվում ես, որ դա ջրի բնական համն է:

Մոշի համ ունենալու համար աղբյուրը կոչվում է Մոշենու աղբյուր: Եթե հոգնում ես՝ Մոշենու աղբյուրի ջուրը խմելուց հետո մի քիչ նստիր, և հոգնածությունդ իսկույն կանցնի:

## ՆԱԴԱՐԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Մեր գյուղին մոտ մի ամառ ռուս զինվորներ են կանգ առնում, որ հանգստանան, բայց խմելու ջուր չեն գտնում մոտակայքում: Հանդիպում են մի գյուղացու, որը նրանց լեզուն չէր հասկանում: Զինվորները խմբվում են նրա շուրջն ու սկսում ձեռքերով հասկացնել, որ իրենց ջուր է հարկավոր: Այդ ընթացքում նրանք անընդհատ կրկնում են. «նադը, նադը…»:

Վերջապես հայ գյուղացին հասկանում է, որ նրանք ջուր են ուզում, և զինվորներին տանում է, աղբյուրի գլխին կանգնեցնում.

— Էս էլ ձեր «նադը», խմեք:

Այս պատմությունը մարդկանց ականջն է ընկնում, բերանից բերան է անցնում, և ծաղրում են գյուղացուն, թե ոնց ժամանակին չի հասկացել ռուս զինվորին: Ծաղրում են, բայց աղբյուրի անունը մնում է նադը, որ ժամանակի ընթացքում դառնում է Նադարի աղբյուր:

## ԿԱԹՆԱԳՈՒՅՆ ԱՂԲՅՈՒՐԸ

Ջուրը ճեղքել է ճերմակ, կավճագույն հողը և բարակ առու կազմած՝ վազում է քչքչալով: Կավճագույն ջուրը ստացել է կաթի գույն, որի համար էլ աղբյուրը ստացել է Կաթնագույն աղբյուր անունը:

Հնում կաթ չունեցող մայրերը այդ աղբյուրի ջրից հաճախ են օգտագործել…

Ջրից խոնավ կավահողի հոտ է գալիս: Ասում են՝ օգնում է հոդացավով տառապողներին:

## ՋՐԱՂԱՑԻ ԱՂԲՅՈՒՐԸ

Մեծ բլրի փեշից բխում է մի զուլալ աղբյուր, որ գալիս-խառնվում է գետի ջրերին: Ժամանակին այդ աղբյուրի մոտ ջրաղաց կառուցվեց, ու այդ օրվանից աղբյուրը նաև անուն ստացավ՝ Ջրաղացի աղբյուր:

Ասում են, երբ այդ ջրաղացում աղացած ալյուրով հաց էին թխում՝ հացի բույրը տարածվում էր հեռո՜ւ-հեռու… Հացը այնքան համով-հոտով էր, որ մարդ ինչքան ուտեր՝ չէր կշտանա: Ջրաղացի աղբյուրի ջրով հունցած հացը երկար ժամանակ մնում էր թարմ ու բուրավետ, փափուկ ու համով:

Հիմա այդ ջրաղացը չկա, բայց աղբյուրը դեռ խոխոջում է և իր անունով հուշում, որ այդտեղ ժամանակին ջրաղաց է եղել:

---

**«ՊԻՈՆԵՐ» № 8-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ**

**1. Գուսան: 2. Կոռնետ: 3. «Կռունկ»: 4. «Քոչարի»: 5. Բալետ: 6. «Ալմաստ»: 7. Թմբուկ: 8. «Կարինե»: 9. Ջութակ: 10. «Անտունի»: 11. Շահեն: 12. «Գայանե»: 13. «Նամուս»: 14. Սանթուր:**

**Գաղտնագիր՝ ԱՌՆՈ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ:**



Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ԾԵԿՈՅԱՆ Ա., ՄԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.։

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806